# ՁՄՌԱՆ ԾԱՂԿԵՓՈՒՆՋ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Դնեպր գետը կապուտակ
Նորից մտավ սառցի տակ...
Փետրվարը խստասիրտ
Ձյուն է զարկում երեսիդ...
Բայց ովքե՞ր են, մի տեսե՛ք,
Որ ձյուներում անեզերք,
Տափաստանի մեջ անհուն
Ճանապարհ են բաց անում...
Կարծես գարունն էր անցնում,
Ո՛չ ձյուն, ո՛չ բուք էր հարցնում.
Պիոներական ջոկատն էր,
Որ քայլում էր գետն ի վեր.
Դեմը անտառ ձյունապատ
Ամեն ծառը՝ ձյունե մարդ.
Իսկ անտառի եզերքին
Մի շիրիմ կար թանկագին:
Պիոներները անվարան,
Թեկուզ լինի բուք, բորան,
Մեծ տոնին մեր բանակի,
Դրոշն առած ջոկատի,
Այն շիրիմն են այցելում,
Որ հանգչում է մայր հողում...
Գայդարի մոտ սիրելի,
Ինչպես խումբը Թիմուրի,
Հավաքվում են նրանք լուռ
Եվ ծաղկեփունջ նվիրում...
Ծաղկամանում են պահել,
Պահել, մինչև ցուրտ ձմեռ,
Որ շիրիմը Գայդարի
Ծաղկեփունջը զարդարի...
Անմար հավատն իր սրտում
Ընկել է նա թեժ մարտում,
Որ թշնամին վայրենի,
Մեր լույս տունը չավերի...
Ու թողել է մի անուն,
Որ երբեք չի մահանում:
Հիմա թեկուզ ձյուն է, բուք,
Ծաղկեփունջ եք տանում դուք.
Ծաղիկներից ավելի
Դուք՝ Գայդարին սիրելի,
Ձեզ համար է նա ընկել,
Մեր երջանիկ մանուկներ...



*Լենինի – Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 2

**ՓԵՏՐՎԱՐ**

1953 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1918 1953

**Խաղաղության պաշտպանության գիրքերում**

# ՅԱՆՍԵՆԻ ՃԱՆԱՊԱՐՀԸ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

**1**

Շտորմը շարունակվում էր։

Նավի տախտակամածի վրա կանգնելու ոչ մի հնար չկար։ Ջրմնախառն փոթորիկը շուրջն այնպիսի խավար էր ստեղծել, որ ոչինչ հնարավոր չէր տեսնել. համենայն դեպս ուղղիստ Յանսենը ոչինչ չէր տեսնում։ Յանսենն առաջին անգամն էր ծովային այսպիսի ճանապարհորդության ելել. նա սարսափում էր։ Դեռ մի քանի օր առաջ նավաստի Յան Անտովսկին բարոմետրին նայելով նրան ասաց.

— Դե՛, Բենժամե՛ն, փոթորիկ կլինի։

Նույնիսկ այն ժամանակ Յանսենի սիրտը դողաց, իսկ այժմ փոթորիկն արդեն կա, նա մռնչում է կայմապարանների և ծխնելույզների արանքում և սոսկալի ճոճում նավը։

Նավը կորցրել էր ղեկը։ Մեքենաների բաժանմունքում ինչ-որ բան էր փչացել։ Հզոր շարժիչն անշարժ կանգնած էր։ Երկու տասնյակ նավաստիներ ավագ մեքենագետի գլխավորությամբ, ավելի շուտ նրա հայհոյանքների տարափի տակ, տենդագին աշխատում էին։ Նրանցից միքանիսն արդեն հազիվ էին ոտքի վրա կանգնում։

— Աջում՝ սառույց...—փոթորիկի ոռնոցի միջից լսվեց կայմի ծայրին «զամբյուղում» տեղավորված նավաստու ձայնը։

Նավապետ Լեվինսոնը նավի աջակողմն անցավ։ Հարկավոր էր նավաստու աչք ունենալ այդ համատարած խավարի մեջ սառույցը տեսնելու համար, բայց Լեվինսոնը հին ծովագնաց էր, նա ոչ միայն տեսավ լողացող սառույցը, այլև որոշեց նրա շարժման ուղղությունն ու արագությունը։

— Կանգնի,— ինքն իրեն մրթմրթաց նա և իջավ մեքենաների բաժինը։

**2**

Աղետը հանկարծ եկավ։

Առաջին ճարճատյունին հետևեց երկրորդը, ապա երրորդը, և մի ահռելի թնդյունից հետո մի պահ խաղաղություն տիրեց։

— Կախե՛լ ճոպանասանդուղքները, դուրս գալ սառույցի վրա, նավն ընկղմվում է։

Սարսափելի իրարանցում սկսվեց։

Բենժամեն Յանսենը վայրկյանաբար հավաքեց ռադիո-սարքավորումը, փոկերն արագությամբ գցեց ուսերին և դուրս թռավ խցիկից։

Նավի տախտակամածը դեպի ձախ էր թեքվել։ Քայլել անհնարին էր։ Հենց դռան մոտ Յանսենը սայթաքեց, ձեռքերի վրա վայր ընկավ և ինչ-որ մեկի հետ սկսեց սահել դեպի տախտակամածի եզրը։

Հանկարծ նոր ճարճատյուն լսվեց։ Նավն արագությամբ ուղղվեց, թափով շուռ եկավ դեպի աջ։ Յանսենը կտրվեց տախտակամածից և մի վայրկյան հետո ամուր զարնվեց



սառույցի վրա հաստ շերտով փռված ձյունին։ Ուսին ցավ զգալով, նա բնազդաբար վեր թռավ և մինչև ծնկները ձյան մեջ խրվելով, սկսեց վազել։

Իսկ նրա հեռևում ճարճատյունով խորտակվում էր հսկա սառույցների մեջ սեղմված նավը։

### 3

— Ընկեր սպանե՛ր,— ասաց մինիստրի տեղակալը, իր մոտ խորհրդակցության հրավիրված օդաչուներին,— արդեն մի ժամ է, որ եթերից մեր ռադիոփարոսները տագնապի ազդանշաններ են բռնում։ Ամենից պարզ լսվում են «Նոր երկրի» ռադիոները, բայց ազդանշանները լսվում են նույնիսկ Լենինգրադում։ Նորվեգական կետորս «Աստերո» նավը, ըստ երևույթին, խորտակվել է, անձնակազմի մի մասը ապաստան է գտել լողացող սառույցի վրա...

— Իսկ կոորդինատնե՞րը...— հարցրեց մի անհամբեր կապիտան։

— Իլարյոն Սա՛վիչ,—հանդիմանեց մինիստրի տեղակալը,— համբերեցեք, չէ՞ որ դուք դեռ առաջադրանքը չգիտեք։

Մինիստրի տեղակալը բացատրեց առաջադրանքը, տվեց մարշրուտն ու աղետյալների մոտավոր կոորդինատները։

Լուսաբացին Տուշինոյի օդանավակայանից տասներկու հզոր մեքենաներ օդ ելան։ Բոլորի առջևից թռչում էր արշավախմբի ղեկավար գնդապետ Յակով Սերգեևիչ Լինքնաթիռը։

Իսկ «Նոր երկրի» ռադիստները, աչքերը կարմրած, կպել էին ռադիո-սարքավորումներին. եթերում մի նվաղուն ձայն անընդհատ կրկնում էր. «SOS, SOS, SOS»...[1]

### 4

Բենժամեն Յանսենը նավաստի Անտովսկու հետ մորթե պարկի մեջ կծկված, երազում էր տաք վառարանի, Վեզուվի խառնարանի կրակի և, նույնիսկ, փոքրիկ, փոքրիկ լուցկու բոցի մասին։ Նրան թվում էր, թե այդ չնչին բոցն անգամ կարող է տաքացնել սառչող մարմինը։ Նա քաղց չէր զգում։ Ցուրտը, սարսափելի, մինչև ոսկորները հասնող ցուրտը, դուրս էր վանել ամեն զգացում։ Այժմ նա նույնիսկ չէր վախենում։ Անտովսկու կասկածները, թե հողմը կարող է ծածկել կաշե պարկը և նրանք հավիտյան թաղված կմնան ձյունե ծածկոցի տակ, չէր



հասնում նրա ուղեղին։ Այդ նույնիսկ ուրախացնում էր նրան. «Ձյունը կծածկի, ուրեմն տաք կլինի, չէ՞ որ ձյունն էլ, համենայն դեպս, ծածկոց է»— մտածում էր նա։

Նավաբեկությունից ազատված տասնմեկ մարդու մեջ ամենից չարչարվածը երկուսն էին՝ Անտովսկին և Յանսենը։

Կապիտան Լեվինսոնը չկար, նա էլ անձնակազմի մեծ մասի հետ զոհվել էր կատասդի աղետի ժամանակ։ Ազատվածների մեջ երեք վիրավոր կային, որոնց, բոցման Հոֆմանի հրամանով, Յանսենն ու Անտովսկին տեղավորել էին մորթե պարկերի մեջ։ Հետո նրանք երկար ժամանակ տանջվել էին ձյուների մեջ, մինչև հաստատել ու գործի էին գցել ռադիո-սարքավորումը։ Որքա՜ն էր եղել Յանսենի ուրախությունը, երբ տեսել էր, որ հաղորդիչն աշխատում է։ Սառչող Յանսենը հինգ ժամ անընդհատ կոորդինատներն էր տվել եթերին և աղեկտուր ճիչը՝ SOS, SOS, SOS!

Այժմ նրա սառած ու խոնջացած մարմինը նվում էր ցավից և ակամա սեղմվում ընկերոջ մարմնին։

— Յա՛ն, դու սլավոն ես, դու կարող ես

---

1 Իտալերեն նշանակում է օգնեցեք։

ասել, ռուսները կգա՞ն օգնության,— հարցրեց Յանսենն Անտովսկուն։

— Լսեցի՞ն։

— Չգիտեմ։

— Եթե լսել են կգան, Բենժամե՛ն,— ասաց Անտովսկին։

## 5

Գնդապետ Սերդոբովը հին, փորձված օդաչու էր, խզուր չէր, որ որոնող արշավախմբի ղեկավարությունը նրան էր հանձնված։ Թռիչքից առաջ գնդապետը արշավախմբի անդամներից յուրաքանչյուրին բացատրել էր թռիչքի պլանն ու ծրագիրը, բաժանել որոնման զոնաները, բացատրել, թե ով ինչ ալիքի վրա և որ ռադիոփարոսի հետ պետք է մշտական կապ պահպանի, ինչ պետք է անի, եթե գտնի աղետյալներին։

Այժմ գնդապետի ինքնաթիռը թռչում էր միայնակ, ամայի և դատարկ սառցադաշտի վրայով։ Ռադիստ-շտուրմանը, ամբողջովին լսողություն դարձած, եթերն էր ստուգում։ Ցածում փոթորիկը հանդարտվել էր, իսկ ինքնաթիռից վեր կապարագույն ցանցի նրման կախված էր ամպամած երկինքը։



Ինքնաթիռը երկար ժամանակ պտտվում էր սառցադաշտի վրա. Ներքևում ո՛չ մի հետք, ո՛չ մի կրակ չկար. աղետյալների ռադիոհաղորդիչը լռել էր։

Հաշվված րոպեներ էին մնացել, մնում էր այնքան բենզին, որքան հարկավոր էր վերադարձի համար։

— Գնում եմ վերջին խուզող թռիչքին,— թղթի վրա գրեց գնդապետը։

Ռադիստ-շտուրմանը գլխով արեց։

Մի գեղեցիկ պտույտով ինքնաթիռը վար սահեց։ Այժմ մինչև ձյունե հարթավայրը հիսուն մետր էր միայն։ Ռադիստ-շտուրմանն ուշադրությամբ դիտում էր ամայի սառույցները։ Հանկարծ նրան թվաց, թե սպիտակ սավանի վրա սև կետեր երևացին։

— Այստեղ են,— գոռաց նա, թեև հաստատ գիտեր, որ ինքնաթիռի աղմուկի մեջ Սերդոբովն իրեն լսել չէր կարող։

Բայց գնդապետը, նայելով նրա դեմքին, ամեն ինչ հասկացավ։

Մի րոպե հետո սև կետերի վրա պտտվող ինքնաթիռից մի կապոց անջատվեց։ Ինքնաթիռն արագությամբ բարձրություն վերցրեց և անհայտացավ կապարագույն ամպերի մեջ։

— Վո՛լգա, Վո՛լգա, ես Դոնն եմ, աղետյալներին գտա, աղետյալներին գտա, ծանրոց գցեցի, ճշտիր կոորդինատները, ճշտիր կոորդինատները,— տենդորեն հաղորդում էր ռադիստ-շտուրմանը։

## 6

Հունիսյան տաք ու պայծառ առավոտ էր։ Տուշինոյի օդանավակայանում թռիչքի պատրաստ կանգնած էր գնդապետ Յակով Սամսոնիչ Սերդոբովի ինքնաթիռը։

Օդանավակայանի սպասարանում բազմոցների վրա նստած զրուցում էին հինգ մարդ։ Դրանցից երկուսը սովետական քաղաքացիներ էին՝ ֆինլորական համազգեստով, իսկ երեքը օտարազգիներ՝ Բենժամեն Յանսենը, Յան Անտովսկին և նորվեգիական դեսպանության մի աշխատակից։

«Աստերո» նավի աղետյալներից սովետական մարդկանց ձեռքով փրկվել էին յոթ մարդ, դրանցից հինգն արդեն վերադարձել էին հայրենիք, իսկ Յանսենին և Անտովսկուն, որոնք փրկվելուց հետո մի քանի շաբաթ հիվանդ պառկած էին եղել Մոսկվայի

հիվանդանոցներից մեկում, այդ օրը գնդապետ Սերգորովն Օսլո էր տանելու։

— Գնդապետ, ի՞նչ բառերով շնորհակալություն հայտնել ձեզ,— վերամբարձ ոճով ասաց դեսպանության աշխատակիցը։

Իսկ Յանսենը մտածեց. «Մի՞թե այդպես են շնորհակալություն հայտնում փրկության համար»։

Դեսպանության աշխատակցին հեռախոսի մոտ խնդրեցին։ Երբ նա հեռացավ, Յանսենն արագ քանդեց նավաստիական պիջակի կոճակները և ծոցագրպանից մի փոքրիկ նկար հանելով, մեկնեց գնդապետին.

— Մայրս...

Գնդապետը վերցրեց նկարը, ժպտաց։

***

Ճիշտ ասած, ռադիստ Բենժամեն Յանսենի պատմությունն այստեղ վերջանում է։ Պատմում են միայն, որ երբ Օսլոյի կինոթատրոններից մեկում ցուցադրվում էր «Ասք Սիբիրյան երկրի մասին» սովետական կինոնկարը, ռադիստ Յանսենը նոր էր վերադարձել հեռավոր նավարկությունից։ Յանսենն իսկույն կինոթատրոն շտապեց, բայց դրամարկղում ոչ մի տոմս չգտնելով, առանց տատանվելու կես ամսվա աշխատավարձը վճարեց և մի պարոնի ձեռքից վերցրեց նրա տոմսը։

# ՀԵՐՈՍ ՔԱՂԱՔԸ



Ռ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ

Նորակառույց շենքերի միջև կանգնած են երեք ավերակ։ Նրանք կմնան այդպես։ Գնդակների տեղատարափներից ծակկատար, աղյուսաշար պատերը մարդիկ երբեք չեն քանդի, չեն պոկի հին ծեփը, որի վրա աշխարհիս շատ լեզուներով մակագրություններ ու նկարներ կան։

«Ես այստեղ կռվում եմ մեր Սովետական Հայրենիքի, իմ Հայաստա...», ռմբաբեկորը պոկել է ծեփը, պոկել է անհայտ հայ զինվորի անունը, բայց մնացել է Մասիսների նկարը, որ թերևս նկարել է նա դադարի պահին։ Դադարի պահի՞ն. բայց չէ՞ որ այստեղ կռիվը երբեք չի դադարել։ Տաս տարի առաջ ալրաղացի այս քանդված հարթակի տակ կռվել են մի խումբ զինվորներ, կռվել են գերմանական տանկերի դեմ, գերմանական հետևակի դեմ, չեն թողել, որ ֆաշիստները մոտենան Վոլգային՝ ռուսական մայր գետին։ Զինվորներից մեկը գրել է կռվողների անունները։

Վոլկով Իվան—լեյտենանտ, ծնված 1921 թվին, Վորոնեժից։

Շալվա Գիլաձե—1922 թվին ծնված, Թբիլիսիից։

Տուշչին Վասիլի...

Ծեփը պոկվել ու շարունակությունը չի կարդացվում։ Մի տող ցած մնացել է «Երևանից» բառը. ուրեմն նա, ով նկարել է այս մասիսները Երևանից է եղել, մեր քաղաքից։ Նա, այդ անանուն հայ զինվորը կռվել, պաշտպանել է Ստալինգրադը, պաշտպանել է ալրաղացի մոտից հոսող Վոլգայի մատույցները։

Ալրաղացից աջ կանգնած է մի երկհարկանի փոքրիկ տուն։ «Պավլովի տուն», այդ-

պես են անվանում այդ տունը։ Այդ տունը պաշտպանել է Սովետական Միության Հերոս Պավլովը։ Պատին խոշոր տառերով գրված է. «Չենք թողնի, որ ֆաշիստները գրավեն Ստալինգրադը։ Վոլգայից այն կողմ մեզ համար հող չկա, կմեռնենք, բայց թշնամուն կկանգնեցնենք Վոլգայի մատույցներում»։ Դեռ մինչև այսօր էլ այդ տան բակում մնում է ֆաշիստական այրված տանկի կմախքը։ Շատ տանկեր են այս շենքի պատերի տակ այրվել, բայց այս մեկը թողել են, որ մարդիկ տեսնեն, իսկ թշնամիները հիշեն, որ անառիկ է մեր երկիրը, անառիկ է մեր ամեն մի տունը և մարդը։

Ալրաղացից մի փոքրիկ տղա սողեսող միշտ ջուր ու ուտելեղեն է բերել պավլովցիների համար։ Պատմում են, որ գերմանական սնայպերին հաջողվում է ծանր վիրավորել տղային։ Արյունաքամ տղան սողեսող տեղ է հասնում, ջուր, հաց է բերում և մեռնում է հերոս Պավլովի ձեռքերի վրա։ «Արյունոտ ուղի» է կոչվում տղայի անցած ճանապարհը։ Այնտեղ, ուր խփվեց տղան, հիմա մանկապարտեզ է։ Երեխաները խաղում են բակում, զվարճանում... Զոհվեց տղան, որ այսօր այն «Արյունոտ ուղու» փոխարեն ձգվի խաղաղության, երջանկության ուղին, կոմունիզմի ուղին, որ իր նման փոքրիկ պատանիներն է՛լ չտեսնեն մահ, այլ ուրախ խաղան և երազեն պայծառ ապագայի մասին։

Այսօր Ստալինգրադում խաղաղություն է։ Խաղաղությունը մենք արյունով ու կորուստներով ձեռք բերինք. մենք չենք թողնի, որ նորից ընդհատվի խաղաղությունը։ Խաղաղության փողոցի գեղեցիկ նոր շենքերը ձգվում են հեռու, դեպի նոր բացված հրապարակները, դեպի Ստալինգրադյան տրակտորի գործարանը։ Ստալինգրադի տրակտորի գործարանի առաջ մի փոքրիկ պուրակ կա. այդտեղ թաղված են գործարանի այն բանվորները, որոնք կռվել, պաշտպանել են իրենց գործարանը թշնամու հարձակումներից։ Երբ բանվորները այսօր աշխատանքի



են գալիս, գերեզմանների մոտով անցնելիս հանում են իրենց գլխարկները ու նոր անցնում։

Խաղաղության փողոցից մի փոքր վեր փռվում է ընկած մարտիկների հրապարակը։ Այստեղ թաղված են Ստալինգրադի պաշտպանության հերոսները, այստեղ թաղված է Իսպանական Կոմունիստական պարտիայի քարտուղար՝ Դոլորես Իբարուրիի որդին՝ Ռուբեն Իբարուրին։ Նա նույնպես կռվել է Ստալինգրադում, կռվել է ֆաշիստների դեմ, նրանց դեմ, որոնք 1936 թվին արյունով ողողեցին Իսպանիան, նրա հայրենիքը։

Ահա և Ստալինգրադյան հայտնի ան-



ցումը։ Ամեն տեղ, ամեն քաղաքում մի մայթից մյուսը անցնելու համար մարդիկ սպասում են, որ միլիցիոները ազդանշանի, կանգնեցնի ավտոմեքենաների հոսանքը և թույլ տա մարդկանց անցնել։ Իսկ այստեղից ավտոմեքենաները չեն անցնում. նրանք շրջանցում են։ Այստեղով մարդը պետք է անցնի հանգիստ, անվտանգ, որովհետև 1942 թվին մի մայթից մյուսը անցնելու համար զոհվել են շատ զինվորներ։ Նրանց պետք էր գրոհել հակառակ մայթի եզրին բարձրացող շենքում տեղավորված ֆաշիստների վրա։ Շատերն են ընկել այս անցման վայրում. բրոնզյա հուշատախտակը պատմում է այդ մասին։ Մարդիկ հարգանքով են անցնում մի մայթից մյուսը։

Բրոնզյա հուշատախտակը, որ խփված է Ունիվերմագի պատին, պատմում է 1943 թվի փետրվարյան այն օրվա մասին, երբ Ունի-

վերմագի գետնախորշում թաքնված վերջին ֆաշիստները ֆելդմարշալ Պաուլյուսի հետ գերի հանձնվեցին մեր զորքերին։

Նորակառույց հսկայական շենքը կանգնած է Ունիվերմագի դիմաց, այն հին շենքի փոխարեն, որի վրա բարձրացվել է հաղթանակի դրոշը։ Մինչև այսօր էլ Ստալինգրադի թանգարանում մնում է այդ դրոշը։ Գնդակներից ծակծկված Կարմիր դրոշը փետրվարյան մի առավոտ բարձրացվել է շենքի կատարը։

Այդ օրից արդեն անցել է տասը տարի։ Ստալինգրադը վերակառուցվել, ավելի գեղեցկացել է։ Բազմահարկ սպիտակ շենքերը իրենց մեջ են առել սերունդների համար պահված ավերակներն ու պատմությունները։

Ցածում հանդարտ հոսում է Վոլգան՝ ռուսական մայր գետը։ Վոլգայի ձախ ափին շուտով կավարտվի Ստալինգրադյան հիդրոկայանի շինարարությունը։ Սա կոմունիզմի մեծ կառուցումներից մեկն է։ Ստալինգրադն այսօր ծաղկում և գեղեցկանում է ժամ առ ժամ։



## ԱՇԽԱՏԻՐ

ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ

Թե գրքերը թևիդ տակ,
Արդեն դպրոց ես գնում,
Գրքի ճամփան անծայր է,
Մատաղ ճամփորդ, շտապի՛ր,
Ու թե կուզես քո կյանքն էլ
Սերունդներին դառնա գիրք՝
Ու կդառնա՝
Աշխատի՛ր...

Աշխատանքը քարայրից
Մարդուն հանեց պալատներ,
Տիրեց երկինք ու երկիր.
Դու պայքարով քո բախտի,
Ոսկի բերդերը մտիր,
Քոնն են փառքն ու ապագան,
Քոնն է աշխարհն,
Աշխատի՛ր...

## ՁՅՈՒՆԸ

ՎԱՀԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Ձյունը՝ անծայր մի վերմակ,
Ծածկեց սար, ձոր, տուն ու բակ.
Ծածկեց հողը՝ մինչ գարուն,
Երբ ջրերը վարարուն,
Կարկաչելով, երգելով
Կվազվզեն դաշտերով,
«Ողջո՛ւյն» կասեն ծառերին
Ծաղիկներին, գառներին,

Ու գործերին կանաչի.
Հողն էլ գործի կկանչի...
Հիմա առած լայն վերմակ՝
Թեթև, փափուկ ու ճերմակ,
Քուն է մտել հողը մեր։
Թող նա քնի ողջ ձմեռ,
Որ ուժ առնի, ուժը՝ շատ,
Լինի հյութեղ, բերքառատ...

# ԺԻԳՈՒԼՅԱՆ ԼԵՌՆԵՐՈՒՄ

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

*Երբ շոգենավը Վոլգայով դեպի ցած է լողում, ուղևորների դիմաց հիանալի տեսարան է բացվում: Ռուսական հանդարտ, հզոր գետի ափին վեր են խոյանում խիտ անտառով ծածկված Ժիգուլյան գեղանիստ լեռները:*

*Ժիգուլները կոչվում են «Երկրորդ Բաքու»:*

*Սովետական գեոլոգները Ժիգուլյան լեռներում նավթի բազմաթիվ տեղեր գտան, այն էլ այնքան շատ, որ հիմա ասում են. «Ժիգուլները նավթի վրա են լողում»:*

*Հինգերորդ հնգամյակի վերջում պետք է ավարտված լինի Կույբիշևյան ԳԷՍ-ը Ժիգուլներում, որը տարեկան տալու է տաս միլիարդ կիլովատ-ժամ էներգիա:*

*Այդպիսի մեծ ուժ ունեցող հիդրոկայան կառուցելու համար անհրաժեշտ է կատարել վիթխարի աշխատանք: Կառուցողները պետք է փորեն և տեղափոխեն 150 միլիոն խորանարդ մետր հող: Եթե այդքան հողը տեղավորենք երկաթուղային վագոնների մեջ, ապա կստացվի այնպիսի մի շղթա, որ կարելի է հասարակածով չորս անգամ պատեցնել երկրագնդի շուրջը: Միայն բետոն լցվելու է 6 միլիոն խորանարդ մետր, իսկ այս բետոնի համար պահանջվող երկաթյա կոնստրուկցիաները կշռելու են 200 հազար տոննա:*

*Կառուցման գլխավոր մասը ամբարտակն է: Վոլգայի ջուրը կհասնի դրան, կբարձրանա 26 մետր և կգոյացնի Ժիգուլյան վիթխարի ծովը: Այդ ծովը ունենալու է մինչև 40 կիլոմետր լայնություն և 500 կիլոմետր երկարություն: Իսկ բարձրացված ջրի ուժը օգտագործվելու է ամբարտակի ներքնամասում, ջրի տակ գտնվող հիդրոկայանի հզոր գեներատորները պտտեցնելու համար:*

*Այսքան մեծ հիդրոհանգույց կառուցելու համար անհրաժեշտ են բազմաթիվ մեխանիզմներ ու մեքենաներ, տարբեր գործարաններ ու ֆաբրիկաներ, երկաթուղային ու խճուղային հիանալի ճանապարհներ:*

*Քարտեզի վրա մի փնտրեք. ոչ մի տեղ չեք գտնի Վոլգայի-Կոմսոմոլսկ քաղաքը: Բայց այդ քաղաքը գոյություն ունի և ապրում է բուռն, եռուն կյանքով: Բանն այն է, որ այս նույն վայրում ընդամենը երկու տարի առաջ մի փոքրիկ գյուղ կար՝ Կունեևկա անունով: 1950—51 թ. թ. ձմռանը Կունեևկա եկան կոմերիտականներ՝ երիտասարդ կառուցողներ: Արագ քանդվեցին գյուղի խարխուլ տնակները, իսկ դրանց տեղ կառուցվեցին աղյուսե գեղեցիկ շենքեր:*

*Տների հավասար շարքերից ստացվեցին փողոցներ, որ և կառուցողները անվանեցին իրենց սիրած հերոսների՝ Նիկոլայ Օստրովսկու, Օլեգ Կոշևոյի, Լիզա Չայկինայի և ուրիշների անուններով...*

*Իսկ ինչպե՞ս կոչեցին նոր քաղաքը: Հիմա ոչ ոք չի հիշում, թե ում մտքով անցավ կոմերիտականների կառուցած նոր քաղաքը անվանել Կոմսոմոլսկ: Բայց չէ՞ որ Կոմսոմոլսկ արդեն կա: 20 տարի առաջ մի նոր քաղաք գոյացավ նաև Հեռավոր Արևելքում, որը կոչվեց Ամուրի-Կոմսոմոլսկ: Հենց այս քաղաքն էլ որոշեցին անվանել Վոլգայի-Կոմսոմոլսկ: Կոմսոմոլսկից բացի, այստեղ կառուցվել են Ժիգուլյովսկ, Պորտովի, Սոցիալիստիչեսկի կոչվող նոր քաղաքները...*

*Հայրենիքը կառուցողներին տվել է առաջնակարգ մեքենաներ, որոնցից յուրաքանչյուրը տասնյակ, հարյուրավոր և նույնիսկ հազարավոր մարդկանց գործ է կատարում:*

*Այստեղ կան տարբեր էքսկավատորներ, բայց ամենից ավելի շատ են «Ուրալեց» էքսկավատորները: Դրանք հզոր մեքենաներ են, որոնք աշխատում են էլեկտրական էներգիայով: Նման էքսկավատորի շերեփը միանգամից վերցնում է երեք խորանարդ մետր հող և լցնում ինքնաթափ ավտոմեքենայի մեջ: Այս էքսկավատորները մեծ մասամբ բեռնում են Մինսկի ավտոգործարանի մեքենաները՝ ՄԱԶ-երը: Սրանք վերցնում են հինգ տոննա բեռ, այսինքն այնքան, որքան միանգամից բարձրացնում է «Ուրալեցի» շերեփը:*

Կան նաև ավելի մեծ էքսկավատորներ: Դրանցից են քայլող էքսկավատորները, որոնք թրթուրների փոխարեն դահուկ-ոտքեր ունեն: Այդ նրա համար է, որ էքսկավատորի ծանր կորպուսը հողի մեջ չխրվի:

Կառուցողներին մեծ օգնություն են ցույց տալիս հողածուծները: Դրանք շատ նման են գետային շոգենավերին, միայն թե դրանց առջևում կա հատուկ շրջանակ և պողպատյա մեծ պտուտակ: Հողածուծը կանգնում է ջրի մակերեսին, իսկ պտուտակավոր շրջանակը իջեցվում է ջրի հատակը: Երբ պտուտակն սկսում է աշխատել, հատակը փխրեցվում է, հողը խառնվում է ջրին: Իսկ այդ ժամանակ հզոր պոմպերը հողն ու ջուրը դուրս են մղում և հատուկ խողովակներով հեռացնում:

Մեքենաները կառուցումներում շատ-շատ են, և նրանց թիվը օրեցօր ավելանում է: Այդ բոլոր մեքենաները պատրաստվել են մեր գիտնականների ջանքերով, մեր խոշոր գործարաններում:

Կույբիշևյան մեծ կառուցման աշխատանքներին մասնակցում է ամբողջ երկիրը. Անդրկովկասի ռեսպուբլիկաները: Մեկ ու կես հազար կիլոմետր ճանապարհ անցնելով, վագոնները այստեղ են հասցնում հաստոցներ՝ Թբիլիսիից, պոմպեր՝ Քութայիսիից, տրանսֆորմատորներ՝ Բաքվից ու Երևանից: Բացի տրանսֆորմատորներից, Երևանի ձեռնարկությունները ուղարկում են կաբել, ներկեր:

Բայց միայն սրանով չէ, որ արտահայտվում է կառուցման համաժողովրդական բնույթը: Իրենք՝ կառուցողները եկել են մեր անծայրածիր հայրենիքի տարբեր կողմերից: Այստեղ հերոսաբար աշխատում են զանազան ազգությունների պատկանող մարդիկ:

Ահա, օրինակ, № 1001 հողահանի վրա աշխատում են 40 հոգի: Դրանց մեջ կան ռուսներ, բելոռուսներ, ուկրաինացիներ, մի ղազախ, մի հայ, մի մորդվին: Այսպես է կառուցման գրեթե ամեն տեղամասում:

Գ-ԷՍ-ի շենքի փոսորակի շինարարության վրա որպես ավագ աշխղեկ աշխատում է ինժեներ-հիդրոտեխնիկ Կոնստանտին Մարտիրոսյանը, Վոլգայի-Կոմսոմոլսկի շինարա-



Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի փոսորակի շինարարությունը:

այդ կառուցումը համաժողովրդական կառուցում է: Ամեն մի ռեսպուբլիկա այնտեղ է ուղարկում իր արտադրանքը:

Իրենց արտադրանքն են ուղարկում նաև րությանը ակտիվորեն մասնակցում է երիտասարդ մասնագետ Կիմ Նիկողոսյանը: Երևանի էներգետիկ տեխնիկումի շրջանավարտ Հակոբ Զուրաբյանը անցյալ տարի

աշխատում էր Վոլգա-Դոնում, իսկ այժմ № 1001 հողահանի ինժեներ-էլեկտրիկն է։

Կանցնի ևս երեք տարի։ Այս նույն տեղում կանգնած կլինի ամբարտակի հսկայական պատը։ Ամբարտակի վրայով կանցնեն երկաթուղին և խճուղին։ Ժիգուլյան նոր ծովով կլողան շոգենավերը, անցնելով շլյուզներից։ Հսկայական հիդրոկայանը էներգիա կտա, որը լարերով կհասի դեպի Պովոլժյեի քաղաքները, կոլտնտեսային դաշտերը, մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան։ Անճանաչելի կդառնա այս հիասքանչ վայրը։ Ծովն ու ոռոգումը հնարավորություն կտան ավելի կանաչացնելու ափերը, էժան էներգիան կթեթևացնի կոլտնտեսականների աշխատանքը և կօգնի արդյունաբերության զարգացմանը։ Եվ այն ժամանակ այստեղի փոքր գյուղերի մասին եղած պատմությունը կթվա նույնպիսի հեռավոր անցյալ, ինչպես այն լեգենդները, որ ժողովուրդը հյուսել է Ժիգուլների մասին։

# ԵՐԿՈՒ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

### ԱՐՀԵՍՏՆԵՐՆ ԻՆՉ ԳՈՒՅՆ ՈՒՆԵՆ

Իր հատուկ գույնը ունի
Յուրաքանչյուր գործը։
Ահա քո առջև է
Ճերմակ հացագործը։
Ճերմակ են հոնքերը,
Մազերն ու քունքերը,
Ավելի վաղ է զարթնում,
Քան երկնի հավքերը։
Նայի՛ր, բոլորովին
Սև է հնոցպանը։
Ամբողջովին այլ է
Ներկարարի բանը.
Ինչքան գույներ գիտես՝
Նրա վրա է, տե՛ս։
Իսկ բանվորի շորը



Շատ քիչ է, որ նոր է։
Բանվորի ափերը
Կոշտուկներով լիքն են,
Իսկ հարուստի ափը՝
Մի տես ի՜նչ փափլիկն է։
Եղունգները՝ ճերմակ,
Մաքուր են ձեռքերը.
Չկան այնտեղ ձյութի,
Մազութի հետքերը։
Իսկ դու լսի՛ր, թե ես
Քեզ ինչ պիտի ասեմ.—
Նրանց մորթն է ճերմակ,
Սակայն գործերն են սև։

### ՓՈՍՏԱՏԱՐԸ

Փոստատարի ետևից
Մենք ձայն ենք տալիս.
— Հեծանիվդ նստած, դու
Ո՞ւր ես վազ տալիս։
— Ես այս ճամփով, այ, վերջին
Այն տունն եմ գնում,
Գնում, և մի մայրիկի
Նամակ եմ տանում։
Իսկ ի՞նչ պիտի նամակում
Նա կարդա, ընկե՛ր։
— «Ճաշին չի գա ձեր տղան,
Նա բանտ է ընկել։
Գործարանի հարթ պատին
Կավճով սպիտակ,
«Խաղաղություն» գրեցի
«Ազատության» տակ։
Թեպետ և ես գրելիս



Սխալ չեմ արել,
Բայց ուսիկանն ինձ բռնել
Ու բանտ է տարել:
Գեղեցիկ ու ճավասար
Տառերով գրել,
Բայց մոռացել եմ վերջում
Վերջակետ դնել:
Իմ թույլ տված սխալը
Ուղղեցեք, տղերք,—
Գրածիս տակ գնացեք,
Վերջակետ դրեք»:

Թարգմ. Ա. ԱԼԻՔՅԱՆ

---

Ս. ՍԻՆԵԼՆԻԿՈՎ

# ՍԻՐԵԼԻ ԳԻՐՔԸ

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

Երբ Ջեսսին դպրոցից տուն էր վերադառնում, միստր Ռոտտերը կանգնած էր իր կրպակի շեմքին:

— Հելլո, Ջեսսի՛,— ուրախացավ նա,— ներս եկ:

— Ես ոչինչ գնել չեմ ցանկանում,— ասաց աղջիկը:

— Միևնույն է, արի,— քնքշորեն հրավիրեց կրպակատերը:

Թողնելով աղջկան իրենից առաջ, կարծես նա լույս գնորդ էր, միստր Ռոտտերը մտավ կրպակ: Նա շտապ վազեց ներս և արկղից հանեց մի մեծ նարինջ:

— Այսպիսի նարինջ աճեցնում է միայն «Ջեկսոն-Ֆրուտ» ընկերությունը,— ասաց միստր Ռոտտերը, քանդելով փաթեթը:— Այսպիսի նարինջ Կալիֆորնիայում էլ դժվար է գտնել…

— Այո,— համաձայնեց Ջեսսին:

— Վերցրո՛ւ,— իր նարինջը մեկնեց նրան կրպակատերը:

— Բայց ես փող չունեմ,— ժպտաց Ջեսսին:

— Ես քեզ նվիրում եմ:

Ջեսսին զարմացավ. սխր միստր Ռոտտերը ամբողջ քաղաքում հայտնի էր իր ժլատությամբ և ագահությամբ: Բայց հիմա նա այնքան սիրալիր էր, որ Ջեսսին նարինջը վերցրեց և շնորհակալություն հայտնեց:

Մինչ աղջիկը իր եղունգներով կճպում էր ոսկե-նարնջագույն կճեպը, կրպակատերը վաճառասեղանի ետևից հանեց մի գիրք և հարցրեց.

— Դու հիշո՞ւմ ես այս: Այսպիսին դու ինձանից գնել ես երկու տարի առաջ:



Ջեսսին տեսավ «Սովետների երկիրը» մակագրությամբ մի փայլուն կազմ։

— Իհարկե հիշում եմ,— ուրախացավ աղջիկը։— Քանի անգամ եմ կարդացել այդ գիրքը։ Ես նույնիսկ, հիշո՞ւմ եք, եկա ձեզ շնորհակալություն հայտնելու այս գրքի համար։

— Ծախի՛ր ինձ այդ գիրքը։

Քիչ էր մնում Ջեսսին նարինջը ձեռքից գցեր։ Խորամա՞նկ է այդ մարդը, թե՞ հիմար։ Մի՞թե մեկնումեկը կհամաձայնի բաժանվել այդպիսի գրքից։ Չէ՞ որ նա այնքան ճշմարտություն իմացավ այդ գրքից Սովետական Միության մասին, սովետական երեխաների կյանքի մասին։ Իհարկե, ոչ մի նման բան չկա և չի կարող լինել Ամերիկայում։ Ջեսսին ամբողջ սրտով սիրեց այն հեռավոր երկիրը, որը կոչվում է Սովետների երկիր։



Իսկ միստր Ռոտտերը մտածել է ետ վերցնել գիրքը։ Դրանից ոչինչ դուրս չի գա։

— Դրա համար չէր, որ մայրիկս թույլ տվեց գնել գիրքը, որպեսզի նորից վաճառեմ,— ասաց Ջեսսին։

— Այնուամենայնիվ վաճառիր,— խնդրեց միստր Ռոտտերը։— Ես քեզ մի ամբողջ դոլլար ավելի կվճարեմ։ Մի ամբողջ դոլլար...

— Ինձ այդ դոլլարը հարկավոր չէ՛,— վիրավորվեց աղջիկը և նարինջը դրեց վաճառասեղանի վրա,— ես գնամ...

— Սպասիր,— կանգնեցրեց նրան կրպակատերը և դուրս վազեց վաճառասեղանի ետևից։— Հասկանո՞ւմ ես, ինձ այդ գիրքը հարկավոր է։ Օդի պես է հարկավոր։

— Իհարկե՛,— զայրացավ Ջեսսին,— շատ կարդացողներ կվճարեն և նրանք նույնիսկ կրկնապատիկ կվճարեն։ Իսկ ինձ ձեր դոլլարները հարկավոր չեն...

— Բանն այդ չէ,— հառաչեց միստր Ռոտտերը,— բոլորովին էլ բանն այդ չէ, Ջեսսի։

Ինչ էլ որ լիներ, ինքն իրեն որոշեց աղջիկը, ինքը «Սովետների երկիրը» գրքից չի բաժանվի։ Բայց կրպակատերը իր ասածն էր պնդում։

— Եկ պայմանավորվենք։ Ավելի լավ է պայմանավորվենք առանց կռվելու։

— Երբե՛ք,— կտրուկ ասաց աղջիկը և ուղղվեց դեպի ելքը։

— Մի՛ շտապիր,— գոռաց միստր Ռոտտերը և նրա ճանապարհը փակեց։— Ես չէի ցանկանում քեզ ասել, բայց եթե դու այդպես համառում ես՝ կասեմ։ Ես այդ գիրքը պետք է հանձնեմ ոստիկանությանը...

— Ոստիկանությա՞նը,— վախեցած հարցրեց Ջեսսին։

— Այո,— պատասխանեց միստր Ռոտտերը։— Ուզո՞ւմ ես սուրբ գրքով երդվեմ, որ այդպես է... Գիտե՞ս, Կալիֆորնիայում, Իլլինոյսում, Վիսկոնսինում և մյուս նահանգներում այդ գրքի դեմ դատ են բաց արել։

— Դատ գրքի՞ դեմ,— հուզվեց Ջեսսին։— Այդպիսի լավ գրքի դե՞մ...

— Դատ են բաց արել,— շարունակեց միստր Ռոտտերը,— և ամերիկացիների համար վնասակար ճանաչել։ Այժմ ոստիկանությունը պահանջում է, որ ես թեկուզ գետնի տակից հանեմ այդ քսան օրինակը, որ վաճառել եմ։ Տասնվեցը ես արդեն ճարել եմ։ Քոնը տասնյոթերորդն է... Իսկ մնացած երեքը չեմ հիշում, թե ում եմ վաճառել։ Այնպես որ բեր, Ջեսսի...

— Չեմ կարող,— հազիվ ասաց Ջեսսին,— ոչ մի կերպ չեմ կարող։

— Ինչո՞ւ,— սկսեց հարցուփորձ անել կրպակատերը։— Բժիշկը վերադարձրել է, քո հարևանուհի Պենրոզը վերադարձրել է, Ջեկկին, որ ապրում է դիմացի տանը, նույնպես բերել է...

— Չեմ կարող։

— Բե՛ր,— պնդեց միստր Ռոտտերը և վաճառասեղանի վրա դրված նարինջը նորից մեկնեց աղջկան։

— Շնորհակալություն,— ասաց Ջեսսին՝ հրաժարվելով նարնջից և ամբողջովին կարմրելով, շարունակեց.— Ես չեմ հիշում, թե որտեղ է այդ գիրքը... Գուցե հիմա ինձ մոտ էլ չի, ախր դա այնքան վաղուց էր...

Այս բառերը լսելով կրպակատերը նույնիսկ փոխեց դեմքի արտահայտությունը։

Նրա փաղաքուշ վերաբերմունքից հետք անգամ չմնաց։

— Դու խորամանկում ես,— գոռաց նա։ — Բոլորը խորամանկում են և ամեն մեկը իր ձևով։ Բոլորին պետք է համոզեմ. «Բարեհաճեցեք, տվեք գիրքը»։ Ես արդեն ձանձրացել եմ։ Ես չեմ թույլ տա՝ ինձ կործանել։ Լսո՞ւմ ես։ Թե դու ուզում ես, որ ես քո մասին հայտնեմ դպրոցին. իսկ ավելի լավ է՝ ոստիկանությանը։

Ջեսսին այլևս չէր լսում։

— Ցտեսությո՛ւն,— նետեց նա կրպակատիրոջը և դուրս եկավ։

— Ես քեզ կսպասեմ մինչև երեկո,— լսեց նա իր ետևից։

Ջեսսին չցանկացավ անհանգստացնել հորը և մորը։ Նա նրանց ոչինչ չասաց։ Նա հազիվ սպասեց մինչև երեկո։ Երբ մթնեց, Ջեսսին վերցրեց «Սովետների երկիրը» գիրքը, փաթաթեց լրագրի մեջ, դրեց կոկոսի յուղի թիթեղյա մաքուր բանկայի մեջ և աննկատելիորեն թաղեց բակում։

Ողջ գիշեր աչքիկը չքնեց։ Րոպե առ րոպե նա սպասում էր ոստիկանության հայտնվելուն։ Երբ մի շրշյուն էր լսվում, նրան թվում էր, թե ոստիկաններն են գալիս։ Բայց Ջեսսին լաց չեղավ։ Նա միայն սեղմում էր բռունցքները և ինքն իրեն շշնջում էր.

— Չեմ ասի, թե որտեղ է գիրքը... Երբեք չե՛մ ասի։

Ոստիկանությունը այդպես էլ չհայտնվեց։

Միայն առավոտյան, երբ Ջեսսին եկավ դպրոց, ուսուցչուհին նրան դիմավորեց դասարանի մուտքի առաջ, ինչ որ օտարոտի հայացքով նայեց Ջեսսիին, ինչպես դեռ երբեք չէր նայել, և դանդաղ, կամացուկ ասաց.

— Ջեսսի՛, դու հիմա դասի չես մնալու։ Քեզ կանչում է դիրեկտորը։

Թարգմ. Կ. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՍԵՎ ԻՐՏԻՇԻ ԱՓԵՐԻՆ

Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Աշնանամուտի զով ու խաղաղ գիշերը վրա հասավ Դիլիջանի ձորերում։ Ավտոմեքենան հանգիստ սահում էր կոկ ու ողորկ խճուղիով, ավելի ու ավելի թաղվում անտառային զանգվածի մեջ։

Երեքով էինք՝ ես, բարեկամս ու շոֆերը՝ Նիկոլայ անունով մի բարձրահասակ, բարեհամբույր երիտասարդ, մեկն այն մարդկանցից, որոնք ծովային հեռավորում ընդամենը մի քանի տարի ծառայելուց հետո, ամբողջ կյանքի ընթացքում սիրով կրում են ծովայինի համազգեստն ու միշտ երանությամբ հիշում այդ տարիները։

Ճանապարհին երկար զրուցել ու կատակել էինք։ Այժմ լուռ նայում էինք դեպի դուրս, հիանում սեպաձև, անտառապատ լեռներով, անհատակ խորխորատներով, մթին քարանձավներով ու ծործորներով, որոնք գիշերվա այդ ժամին ստվերանկարների պես հաջորդում էին իրար, սեղմում ճանապարհն ու ասես հրում դեպի ձորամիջով գալարվող Աղստեֆ գետը։ Խճուղու վրա հովանի կապած ծառերի թխակապույտ գանգուրների արանքից մերթ երևում էր լուսնի կիսահալ ձնագունդը, մերթ նորից թաքնըվում, մի յուրօրինակ պահմտոցի խաղալով մեզ հետ։



Նոր էինք թեքվել դեպի Սպիտակ ջուրը, երբ Նիկոլայը շեշտակի կանգնեցրեց մեքենան, վերցրեց մոտը դրված որսորդական հրացանն ու դուրս թռավ խցիկից։ Լապ-



տերներից արձակվող էլեկտրական լույսի տակ մի պահ միայն նկատեցինք դեմից անցնող աղվեսին, որ իր թավ ու երկար պոչը հազիվ քարշ տալով կտրեց խճուղին, մտավ Սպիտակ ջրի հեղեղատն ու կորավ։

Նիկոլայը գետափնյա ճերմակ խճաքարերի վրայով առաջ անցավ։ Սպասում էինք հրացանի կրակոցին, բայց այդպես էլ չլսվեց։ Մի քանի րոպե անց շոֆերը ետ եկավ ու գլուխնափսոսանքով օրորեց։

— Կորավ անիրավը, թաքնվեց քերծերի արանքում...

— Վատ որսորդ ես եղել,— կատակեց բարեկամս, որ արդեն իջել էր մեքենայից, կանգնել խճուղու մեջտեղը։

Ես նույնպես իջա։ Վայրը հարմար էր, ջուրը մոտիկ։ Կարելի էր մի քիչ հանգստանալ, թեև առանձնապես հոգնած չէինք։

— Այո, վատ որսորդ եմ,— քիչ ուշացումով խոստովանեց Նիկոլայը, ժպտաց ու ավելացրեց.— Եթե լավ որսորդ լինեի, այսօր չէի կակազի...

Եվ նա այդ առթիվ պատմեց այս պատմությունը։

— Տարիներ առաջ աշխատում էի Ղափանում՝ Սև Իրտիշի ափերին։

Մի երեկո վերադառնում էի հեռավոր ուղևորությունից։ Ահագին ճանապարհ էի կտրել։ Մնում էր մի հիսուն-վաթսուն կիլոմետր։ Հոգնած էի բավականին. չէի շտապում։ Աջ ձեռքս ղեկին դրած՝ տարվել էի ինչ-որ մտքերով։ Ճանապարհի եզրով ձգվող գորշ, անհրապույր բլրաշարը, որ համարյա միշտ ծածկված է լինում փոշու թանձր շերտով, վաղուց սովորական էր դարձել աչքիս ու չէր գրավում ուշադրությունս։

Ինչի՞ մասին էի մտածում՝ չգիտեմ, երբ մեկ էլ ավտոյի թափքը ուժգին ցնցվեց։ Կարծես ահագին բարձրությունից հողով լի մի ծանր պարկ գցեցին մեջը, կամ անվի տակ մի խոշոր քար ընկավ։ Ճանապարհը կոկ էր, քարի չէի հանդիպել, մնում էր ստուգել թափքը։

Հենց գնալու ընթացքում աչքի պոչով ետ նայեցի և ինչ... Գուցե հավատաք, գուցե՝ չէ, բայց ես եղած բան եմ պատմում, զարհուրելի մի դեպք, որ ամեն հիշելիս մարմինս փշաքաղվում է...

Տեսնեմ մի ահռելի վագր, մի գազազած հսկա, որ մեքենայի ցնցումներից ոտքերը լայն չռած, աչքերը կրակ դարձրած, երախն այնպես է բացել, դաշույնաձև ժանիքները ցցել, որ կարծես ուզում է խցիկը միանգամից կուլ տալ։ Մի րոպե թվաց, թե ամբողջ թափքը բռնվել է բոցով՝ շեկ, վետվետող բոցով։ Քիչ մնաց աչքերս մթնեին։

Մինչև այդ, ճիշտն ասած, ես իմ աչքին բավական սրտոտ տղա էի երևում։ Շատ դեպքեր էին պատահել, երբ դեմ-դիմաց գնացել էի դեպի մահը ու աչք չէի ճպել։ Չեմ պարծենում. կհանդիպենք՝ տղաները կպատմեն։ Բայց բանից դուրս եկավ, որ այս գիշատիչ հսկան ավելի ահավոր էր, քան ինքը՝ մահը։ Ցնցվեցի ամբողջ մարմնով։ Ձեռքս բնազդաբար տարա դեպի ատրճանակս ու նոր միայն զգացի, որ զենք չեմ վերցրել։ Շատ ափսոսացի, թեև դժվար թե ատրճանակը կարողանար բան անել այդ ամեհի վագրին։

Որտեղի՞ց էր դուրս ընկել. Սև Իրտիշի եղեգնուտների՞ց, տափաստանի՞ց, ինչպե՞ս էր դարանակալել, ինչպե՞ս էր թռել ավտոյիս թափքը, մինչև հիմա էլ չեմ կարողանում հասկանալ։

Գիտակցությունս համարյա մթագնել էր։ Կարելի է ասել, որ միայն ձեռքերս էին վարժ գործում։ Մեքենան կանգնեցնելը հիմարություն կլիներ։ Վագրն իսկույն ցած կթռչեր ու վայրկենաբար կհոշոտեր ինձ։

Վերջին արագությամբ սլանում էի առաջ ու առաջ։ Մեկ էլ հենց ականջիս տակ որոտաց մի ահռելի մռնչյուն. կարծես կայծակ ճայթեց ու դրանից մեքենայիս մոտորի ձայնն անգամ խլացավ։ Տեսնեմ՝ գազանը վրա ընկած, թիկունքից կրծոտում է ու ճանկռոտում խցիկս։ Այժմ ինձ ու նրան բաժանում էր ֆաներայի մի հասարակ միջնորմ։ Նրա ժանիքների ու մագիլների կատաղած խըրթխըրթոցը ասես զգում էի ողնաշարիս մեջ։

— Չէ՛, կորար, Նիկոլայ,— շամփրեց միտքս։

Մի վայրկյան հուսալքությունը պաշարեց ինձ։ Թվաց, թե այլևս ոչ մի ելք, ոչ մի փըրկություն չկա։ Բայց հաջորդ վայրկյանին թափ առ՛եցի ինձ, զգաստացա։ Որտեղից-որտեղ միտս եկավ ծովայինների սիրած խոսքը. «Սովետական մարդու համար անելանելի վիճակ չկա. միայն թե՝ չկորցնես քեզ»։

— Այո՛, ճիշտ է ասված, Նիկոլայ, հավաքի՛ր քեզ, մաքառի՛ր մինչև վերջ. մերկ ձեռքերով էլ լինի՝ պիտի կռվես վագրի հետ, կյանքդ խլես նրա ժանիքներից...

Տեսա, որ ուղիղ քշելով բան չի դուրս գա։ Դժվար թե կարողանամ անսովոր «բեռըս» տեղ հասցնել. ճանապարհը դեռ հեռու է, գազանը՝ թիկունքիս։ Պետք էր ցնցել մեքենան, որպեսզի վագրը չկարողանա իրագործել իր չարանենգ նպատակը և հետո, եթե հնարավոր լինի, դուրս շպրտել թափքից։

Հենց այդ դիտավորությամբ էլ մեքենան թեքեցի ուղիղ ճանապարհից, մտա շրջակա խորդուբորդը։ Պտույտներ եմ գործում, այնպիսի ահավոր զիգզագներ, վերելքներ ու վայրէջքներ կատարում, որ մարդ կարող է շշմել։ Ավտոն քիչ էր մնում շուռ գա։ Բայց ամեն անգամ մի երջանիկ դիպվածով, կամ իմ վարժ ձեռքերի շնորհիվ մնում էր անիվների վրա, նորից զիգզագում, նորից թըռչում առաջ ու առաջ...



Նիկոլայը ծխախոտ խնդրեց։ Հուզված էր։ Այժմ արդեն նրա կակազելը ակնհայտ էր մեզ համար։ Լեզվի փոխարեն երբեմն գործում էին ձեռքերն ու դիմախաղը։ Լուսնի շողերի տակ նրա նիհարավուն դեմքը սպըրդնել, գաջի գույնի էր ստացել։

— Թե ո՞նց եմ տեղ հասել, ի՞նչ վիճակում, եզրակացրեք նրանից, որ երեք ամիս շարունակ համր ու խուլ պառկած եմ եղել հիվանդանոցում։

Տղաները պատմում են, որ տեղ հասնելս, ավտոն կանգնեցնելս և ուշաթափվելս մեկ է եղել։ Իսկույն դուրս են քաշել խցիկից, ուշքի բերել, ջուր տվել, օդի տվել, բայց՝ այլևս ոչ մի ձայն, ոչ մի շշուկ։

Հետաքրքրությունից դրդված զինվել են ու ավտոմեքենաներով ետ գնացել իմ եկած ճանապարհով։ Տասնչորսերորդ, թե տասնհինգերորդ կիլոմետրի վրա, ճանապարհից դուրս, հանդիպել են ահավոր հսկայի լեշին՝ մոտ երկու մետր երկարության մի սատկած վագրի։ Ավտոյի ուժեղ ցնցումներից վագրը վերջիվերջո ցած է շպրտվել, ընկել մեքենայից, գլորվել ձորը և քարերին զարկվելով՝ ջախջախվել։



— Անցավ ժամանակ։ Բժիշկների հոգատար հսկողության տակ կամաց-կամաց բուժվեցի։ Միայն այս կակազելս մնաց։

Թեև իմ այդ անսովոր արկածի լուրը տարածվեց շատ հեռու և սկսեցին առասպելներ պատմել իմ մասին, գովել իմ հնարամտությունն ու խիզախությունը, բայց ես էլի գտնում եմ, որ վատ որսորդ եմ եղել։ Քաջ ու սառնասիրտ որսորդ լինելու դեպքում այդ օրը չէի ընկնի։ Ուրիշի համար գուցե՝ ոչինչ, սակայն ինձ համար, ամոթ էր։

Նիկոլայը, իհարկե, համեստություն էր անում։ Նրա կատարածը իրոք որ խիզախության և հնարամտության մի լավագույն նմուշ էր։

# ԻՏՏԵՆ

(Խանտական ժողովրդական զրույց)

Վ. ՊՈՒԽՆԱՉՅՈՎ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Իտտեն փոքր էր, երբ զրկվեց ծնողներից: Մայրը մեռել էր իր ծնվելուց քիչ հետո, իսկ հայրը տայգան որսի գնաց և այլևս չվերադարձավ:

Իտտեի տատը՝ Իմյալ-Պայան տղային վերցրեց իր խնամքի տակ:

Իտտեն մեծ տղա դարձավ, բայց ամեն ինչից վախենում էր և առանց տատի ոչ մի տեղ չէր գնում: Տատը մտածում էր.

«Ինչպե՞ս Իտտեի վախկոտությանը վերջ տամ, ի՞նչ անեմ, որ նա գնա գետը ձուկ բռնի, անտառ գնա գազան որսա, անվախ որսորդ դառնա»:

Այդ տարի անտառում մայրի ծառերի վրա շատ կաղին կար, հարկավոր էր ձմեռվա պաշար կուտակել:

Տատն Իտտեին ասաց.

— Գնանք, Իտտե՛, մայրու կաղին հավաքելու:

— Ինչ կա որ, տատի՛, գնա՛նք...

Տատը մտավ նավակը, որսորդական հրացանը դրեց գոգը, Իտտեին նստեցրեց իր կողքին և նրանք թիավարեցին գետի հոսանքն ի վար:



Օրը պարզ էր, արևոտ: Տայգան հանդարտ խշշում էր: Ոլորմոլոր հոսում էր Տիմ գետը: Երեք ոլորան անցան, դուրս եկան, մտան տայգան և բարձրացան բլրի լանջը:

Անտառում թռչունները զբաղված էին մայրու պտուղները կտցահարելով, և այստեղ-այնտեղ ծառերից կաթում էր կաղինը՝ «կըտ, կըտ...»

Տատը և Իտտեն սկսեցին կաղին հավաքել: Ծառերը գլուխները վեր էին տնկել և իրենց սաղարթների մեջ թաքցրել պտուղները՝ խոշոր ու համեղ կաղինները:

Պառավ Իմյալ-Պայան փայտով խփում էր ծառի ճյուղերին և կաղինները թափվում էին կարկտի նման:

Նավակը լցրին կաղինով. պատրաստվում էին տուն վերադառնալու: Տատը մի տոպրակ կաղին թողել էր բլրի վրա: Նա ասաց Իտտեին.

— Վա՜յ, Իտտե՛, լիքը տոպրակը մոռացա ծառի տակ, մի վազիր բեր... Ա՛յ տղա, հրացանը վերցրու հետդ, գուցե բան է պատահում: — Իտտեն հրացանը վերցրեց և վազեց անտառ, իսկ Իմյալ-Պայան նավակը հրեց ափից, հեռացավ: Իտտեն լանջից ետ նայեց ու ահով տեսավ, որ նավակը հեռանում է: Սկսեց լալ ու գոռալ.

— Տատի՜, ինչո՞ւ ես ինձ մենակ թողնում...

Իմյալ-Պայան ոչ մի անգամ ետ չնայեց: Ինչքան ուժ կար բազուկներում թիավարում էր և շուտով անհետացավ գետի ոլորանի ետևում: «Ոչինչ, հրացանը հետն է, ի՞նչ պիտի լինի...», մտածում էր նա:

Իտտեն մենակ մնաց: Իջավ գետի ափը, գոռալով դես-դեն ընկավ. արևը մայր էր մտնում, որտե՞ղ գիշերեր ինքը: Ո՞ւր գնար, ո՞ւր թաքնվեր... Շատ ման եկավ, մի ծառի

փչակ գտավ, մտավ մեջը և հրացանը գրկին կուչ եկավ։

Արևը մայր էր մտել, քամին ոռնում էր անտառում, անձրև էր մաղում։ Տայգան աղմըկում էր, կաղինները թափվում էին ծառից ու կտկտոցով դիպչում փչակին։ «Սարսափելի գիշեր է։ Հիմի գազանները կգան ինձ կուտեն», ահով մտածում էր Իտտեն։ Երկյուղից Իտտեն սկսեց գոռալ.

— Դե որ եկել եք ուտելու, գոնե գլուխս թողեք։

Տատն ասել էր, որ մարդ ամեն ինչ գլխով է անում, կարևորը գլուխն է։

Իզուր էր գոռում, ոչ ոք նրան ուտելու չէր եկել։ Միայն շրջակայքում կաղինները թափվում էին կտկտալով։



Թեև դեռ վախենում էր, բայց էլի քունը հաղթեց տղային. այդ օրը կաղին հավաքելով հոգնել էր։

Մի ժամանակ արթնացավ և տեսավ լույս է, արևը բարձրացել է։ Թռչունները երգում են, անտառը հանդարտ խշշում է։

Իտտեն սկսեց շոշափել իրեն, որ տեսնի անվնա՞ս է։ Ձախ ձեռքը մեկնեց՝ չէ՛, ձեռք է առաջվա նման։ Աջը մեկնեց՝ էլի ձեռք է։ Իտտեն փչակից դուրս թռավ, նայեց շրջակայքին, ինչքան կաղին է թափվել գիշերը...

Սկսեց կաղին հավաքել ու քիչ-քիչ վախը մոռացավ։ Այն ժամանակ ինքն իրեն հարց տվեց. «Իսկ ինչի՞ց էի վախենում... այ քեզ հիմարությո՜ւն...»

Հավաքեց կաղինը, մի մեծ կույտ արավ։ Նայեց գետին՝ ահա նավակը մոտենում է, տատն էլ մեջը։ Գլխարկն օդում թափ տվեց ու գոչեց.

— Տատի՛, ինչի՞ ես ինձ մենակ թողել։

Տատը ափ դուրս եկավ և բարի ժպիտը դեմքին պատասխանեց.

— Մի նեղանա, Իտտե՛, դու մարդ ես։ Քեզ ոչ ոք ոչինչ անել չի կարող։ Մարդը բոլորից ուժեղ է, նա տերն է ամեն ինչի։ Սրանից հետո դու ոչ մի բանից չպիտի վախենաս։ Հրացանը ձեռքին տղան առյուծից էլ ուժեղ է։ Իսկ ես գիշերը քեզնից քիչ հեռու թաքնված աչքերով հսկում էի քեզ...

Իտտեն մտածեց. «Ճիշտ է ասում տատիկը, ոչ մի բանից չպիտի վախենալ»։

Հաշտվեց Իտտեն իր տատի հետ։ Նորից սկսեցին կաղին հավաքել։ Նորից նավակը լցրին կաղինով և թիավարեցին դեպի տուն։

Տիմ գետը հոսում էր ոլորմոլոր։ Արևը բարձր կանգնած էր երկնքում։ Տայգան հանդարտ խշշում էր։

Լավ էր, շա՜տ լավ...

Այդ օրվանից Իտտեն դարձավ անվախ. ուր ուզենար՝ կգնար։

Այդպես Իմյալ-Պայա տատն իր թոռնիկի սրտից հանեց վախը։ Տարիներ անցան, Իտտեն մեծացավ և դարձավ անվախ որսորդ, շա՜տ անվախ։




Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մի տարի մեր շունը սատկեց։ Այդ բանը հորս համար մեծ հոգս դարձավ։ Շունը գյուղացու հավատարիմ ընկերն է, նրա տան ու անասունների քաջ պահապանը։ Չէր կարելի մնալ առանց շան, մանավանդ որ մենք ապրում էինք գյուղի ծայրին և մեր տնից դենը մթին անտառն էր։ Այդ ժամանակ ես տասներկու-տասներեք տարեկան տղա էի։

Մեր քավոր Գրիգորը ապրում էր մեր տնից վերև, անտառին ավելի մոտ։ Հայրս մի փութ ալյուր տվեց Գրիգորին և նրանից մի շնիկ գնեց։

Մայրս բարկացավ հորս վրա, թե՝ ինչ սիրտ ես արել, մի փութ ալյուր տվել մի շան համար (այն տարին հացը պակաս էր)։ Հայրս ասաց, որ քավոր Գրիգորի մայր շունը գայլխեղդ շների ցեղից է, որ նրա ձագի համար մի փութ չէ, ուրիշները երկու փութ ալյուր կտան։ Գրիգորն էլ հարևանության պատվին դեռ էժան է տվել։ Մայրս մի քիչ էլ քրթմնջաց ու լռեց։



Մեր ուրախությունն անսահման էր։ Բոլորս շրջապատել էինք շնիկին ու փայփայելով, շոյելով աշխատում էինք մի հարմար անուն գտնել նրա համար։ Մեկը մի անուն առաջարկեց, մյուսը՝ մի ուրիշ, վերջը որոշեցինք շնիկին տալ մեր առաջվա շան անունը՝ Բասար։

Այդպես էլ անվանեցինք։ Շնիկի անունը դրինք Բասար։ Բասար դու Բասար...

Ինչպիսի՜ չարաճճիություններ ասես, որ չէր անում։ Մենք էլ մեր բերանի ամենալավ պատառը նրան էինք տալիս։ Բասարը մի սև շնիկ էր՝ դեպի վեր կեռված պոչով, երկար դնչով ու անվախ աչքերով։ Ճակատը սպիտակ էր, որը զարմանալի գեղեցկացնում էր նրան։ Շնիկը վազվզում էր մեր բակում, բռնում մեզնից մեկն ու մեկի փեշից, ձիգ տալիս, մռմռում և անվերջ ուրախացնում մեզ։ Երբեմն կանգնում էր գոմի կտրին ու հաչում անցնող-դարձողի վրա։ Այդ պահերին մեր բակն էր մտնում երկար դնչով, սև հսկայական մի շուն։ Սկզբում այդ օտար շանը տեսնելով, մենք վախից թաքնվում էինք՝ ով որտեղ կարող էր։ Բայց մեր Բասարը պոչն աշխույժ թափահարելով՝ իջնում էր կտրից, վազում դեպի այդ շունը և մեծ ուրախությամբ խաղում նրա հետ, լիզում նրա դունչը, ձիգ տալիս պոչից։ Երբեմն էլ մեզ անծանոթ այդ շունը մեր Բասարի համար ոսկոր, մի կտոր պանիր կամ հաց էր բերում։ Հետո մենք իմացանք, որ այդ շունը մեր Բասարի մայրն է և այլևս չվախեցանք նրանից։

Անցան ամառն ու աշունը, եկավ ցուրտ ձմեռը, սպիտակ փափախներ դրեց կտուրներին ու աթարի դեզերի վրա։ Այն ժամանակ մեր Բասարն արդեն հինգ-վեց ամսական էր։ Հայրս կտրել էր նրա պոչն ու ականջները, որ լավ լսի, որ պառկած ժամանակ պոչը չդնի քթածակերին ու չխանգարի հոտառությունը։

Ցերեկները Բասարին կապած էինք պա-

հում ու կերակրում առանձին մի ամանի մեջ։

— Շունը ցերեկները միշտ կապած պահեցեք, իսկ գիշերները՝ բաց թողեք. կապած շունը կատաղի ու անվախ է լինում,— ասում էր հայրս։

Եվ մենք կատարում էինք նրա խորհուրդը։

* * *

Ձմռան մի գիշեր էր, մի երկար ու ձանձրալի գիշեր։ Մենք անկողիններում պառկած՝ լսում էինք մորս հեքիաթը, իսկ մեր Բասարը դրսում հաչում էր, հա հաչում։ Նա մերթ հեռանում էր տնից, մերթ արագ մոտենում տան դռներին ու հաչում ավելի կատաղի։ Մենք լսում էինք հետաքրքիր հեքիաթը ու նայում, թե ինչպես էին թիթեղյա վառարանի ճեղքերից դուրս եկող կրակի շողերը խաղում պատին։

Հայրս հանկարծ նստեց անկողնու մեջ ու ասաց.

— Ա՛յ կնիկ, այս շունը գայլի վրա է հաչում, անփորձ, փոքրիկ շուն է, գայլերը կտանեն, վեր չկենա՞մ նրան գոմը գցեմ։

— Դու էլ բան ասացիր, շունը գոմը գցես, որ հավերը վախենա՞ն,— ասաց մայրս։— Շուն է էլի, կհաչի էլ, տապ էլ կանի։

Մեզ այլևս չէր հետաքրքրում մորս հեքիաթը։ Այն բանը, որ դրսում գայլեր կան, անհանգստացրեց փոքրերիս։

Չգիտեմ գիշերվա կե՞սն էր, թե՞ լուսաբացին մոտ, մեկ էլ լսեցինք, որ մեր Բասարը մի ահավոր ձայն հանելով, եկավ, կպավ մեր դռանն ու սկսեց կլանչել, չանկռոտել դուռը։ Հետո ինչ որ ծանր թմփոց լսվեց բակում։

— Վա՜յ, քո տունը քանդվի, ա՛յ կնիկ,— գոչեց հայրս,—գելը շանը հախռում է, վեր կաց, շորերս տուր, ճրագ արա...

Մենք վեր թռանք մեր տեղերից՝ ով ում շորը կարողացավ հագավ, ու վազեցինք դուրս։ Հայրս արդեն դրսումն էր։

— Տարա՜վ, գայլը շանը տարա՜վ, էհե՜... հե՜յ... հեռվից լսվում էր նրա ձայնը։

Մենք վազեցինք նրա ետևից։

Ձմեռվա ճրճքան գիշեր էր։ Այնպիսի գիշերներից մեկը, որ լինում էին մեր կողմերում։ Դրսում թեկուզ գիրք ձեռքդ առ ու կարդա։ Լուսնյակը մի կողմից էր լույս տալիս, պսպղան ձյունն էլ՝ մյուս կողմից։

Հայրս ու մենք հարահրոցով վազում էինք գայլի ետևից, որը դժվարությամբ ճեղքելով խոր ձյունը, դեպի անտառ էր փախչում։ Այն կողմից լսվում էր մեր Բասարի աղեկտուր կլանչը։

Գայլը վազում էր, մենք նրա ետևից, գայլը վազում էր, մենք նրա ետևից, բայց արդեն կորցնում էինք մեր հույսը։ Գայլը հավեհաս էր անտառին։

Հանկարծ որտեղից-որտեղ նրան հասավ մի հսկայական շուն և նրանց մեջ սկսվեց մի սոսկալի կռիվ։ Գայլն ու շունը տապալվելով ձյան մեջ, գզում-գզգզում էին իրար, վնգստում, ոռնում։ Մենք մեր հոր ներկայությունից սրտապնդված, բավականին մոտեցանք նրանց և տեսանք, որ գայլի հետ կռվողը մեր Բասարի մայրն է։



Գայլն աշխատում էր ազատվել շան ձեռքից, բայց ինչ անում, չէր անում, հնար չէր գտնում պոկ գալու նրա երախից։ Նա արդեն բաց էր թողել Բասարին, որը կլանչում էր

ձյան մեջ ընկած։ Այդ կլանչոցն ավելի էր կատաղեցնում նրա մորը։ Երբեմն նրանց քաշքշոցից այնպիսի ձյունափոշի էր բարձրանում, որ երկուսն էլ կորչում էին աչքերից։

Հայրս մի հսկայական մահակ ձեռքին, շվարած, մի կողմից մյուսն էր թռչում, գոռգոռում, հայհոյում։ Նա չէր կարող իր մահակն օգտագործել, ով գիտե, հանկարծ չկպչի Բասարի մորը։

Վերջապես նա հարմար պահ գտավ ու մահակն ամենայն ուժով իջեցրեց գայլի գլխին։ Գայլը մի այնպիսի ոռնոց հանեց, մի այնպիսի ոռնոց, որ շունն էլ վախեցավ ու բաց թողեց նրան։ Գազանը լեղապատառ փախավ դեպի անտառ։ Մայր շունը մի քիչ էլ հետապնդեց նրան ու ետ եկավ։ Նա կաղում էր առջևի ոտքից ու նրա մեջքից արյուն էր հոսում, ներկում ճերմակ-ճերմակ ձյունը։ Բայց նա արդեն ուրախ պտտվում էր հորս շուրջը, հոտոտում, լիզում հորս գրկին ծվարած Բասարի դունչը, ոտքերը։ Բասարը շարունակում էր վնգստալ, մռմռալ։

Նրան բերեցինք տուն. մարմնի վրա մի քանի վերքեր կային։ Գայլի ժանիքների հետքերն էին։ Շնիկը դեռ վախից դողում էր ու հրաժարվում օգտվել մեր առատ հյուրասիրությունից։ Բայց նրա աչքերում ուրախություն կար։

Մայրս ձեթ քսեց Բասարի վերքերին։ Տասն օր նրան պահեցինք տան ներսում, մինչև վերքերը բոլորովին լավացան։ Նա մոռացավ պատահածը ու սկսեց մեծանալ։

Մի տարի հետո նրա ահից ոչ մի գայլ, ոչ մի օտար շուն սիրտ չէր անում մոտենալ մեր տանը։

Երբեմն, ձմեռային գիշերներին, երբ սոված գայլերը ահն աչքերի առաջ շատ էին մոտենում մեր տանը, մեր Բասարի հաչոցի հետ լսվում էր նաև նրա մոր ոգևորող ձայնը։ Չնայած մայրն արդեն ծերացել էր, բայց էլի նեղն ընկած պահերին օգնության էր հասնում մեր Բասարին։

# ՍԱԳԻԿ

(Փոքրիկների համար)

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



Սագիկ, սագիկ, շուտ արի,
Քեզ տամ ցորեն ու գարի։
Մեր բակում ծառ եմ տնկել,
Ավազան եմ պատրաստել,
Ջուր եմ լցրել լեփ–լեցուն՝
Արի, արի, իմ սիրուն.
Մտիր ջուրը, լողացիր,
Ծառի հովին զովացիր,
Թող դպրոցում իմանան
Եվ բոլորը հիանան։




## ԿԵՆԴԱՆԻ ԱՆԿՅՈՒՆԸ

... Երևան: Բերիայի փողոց: Բելինսկու անվան ոչ լրիվ միջնակարգ դպրոց: Բարձրանանք չորրորդ հարկ և մտնենք լուսավոր և ընդարձակ սենյակներից մեկը: Բայց դա սովորական մի դասասենյակ չէ: Ներս ես մտնում թե չէ, չորս կողմից ծվծվոցներ ու ճիչեր են լսվում:

Սա կենդանի անկյունն է, դպրոցի բիոլոգիական կաբինետը: Այստեղ շատ ճագարներ, գորտեր ու աղավնիներ կան: Կան նաև ծովախոզուկներ, մի ոզնի և մի քանի լոր: Բոլոր լուսամուտների գոգերին դրված են ծաղկամաններ՝ գույնզգույն ծաղիկներով ու տեսակ-տեսակ բույսերով:

— Մեր դպրոցի աշակերտուհիները զբաղվում են փոքրիկ գիտական աշխատանքով,— իր ասածի վրա ժպտալով ասում է միջահասակ մի կին: Դա բիոլոգիայի դասատուն է՝ Տախիա Գեորգիևնա Գուբկոն, որի ջանքերով է, որ կազմակերպված է այս հիանալի կաբինետը:

Դպրոցի ամեն մի աշակերտուհի մեծ ուրախությամբ է կատարում սիրելի ուսուցչուհու առաջադրանքը. իսկ նա, պատանի բնասերներին հետաքրքիր շատ մտքեր է թելադրում:

Դպրոցի պիոներներն ու դպրոցականները պարզ, բայց ուսանելի փորձեր են կատարում, որոնք հաստատում են Միչուրինի ուսմունքը:

Կաբինետի պահարաններում դասավորված են թռչունների, գորտերի, փոքրիկ գազանների խնամքով պատրաստված կմախքները, խրտվիլակները, միջատների կոլեկցիաները, հերբարիումները:

Եվ այս բոլորը պատրաստել են երեխաները: Ահա օրինակ հավի կմախքը: Ինչքա՜ն գիտելիքներ, ցանկություն ու համբերություն էր պետք յոթերորդ դասարանի աշակերտուհի Լաուրա Սիմոնյանին, որպեսզի նա պատրաստեր այդ կմախքը: Չէ՞ որ դա բաղկացած է մի քանի հարյուր մեծ ու փոքր ոսկորներից: Դրանք բոլորը հարկավոր էր հավաքել, տեղադրել և ամրացնել բարակ լարիկներով: Բայց դա հետաքրքիր էր և անհրաժեշտ: Եվ Լաուրան սիրով կատարեց այդ աշխատանքը:

Ահա յոթերորդ «ա» և «գ» դասարանների աշակերտուհիներ Լաուրա Աղաջանյանի և Մարիա Հովսեփյանի աշխատանքը: Նրանցից ամեն մեկը գորտի մի կմախք է հավաքել:

Լավ հերբարիում են պատրաստել Աելիտա Հակոբյանը և Դոնարա Քալաշյանը: Այդ ալբոմների ամեն մի թերթիկը մի պատմություն է ծառերի տերևների մասին: Այդ ալբոմներում յուրաքանչյուր ծաղիկ բաժանված է մասերի և ուսումնասիրողը պարզ պատկերացում է կազմում ծաղկի մասին:

Դպրոցի կենդանի անկյունում բազմաթիվ փորձեր են կատարվում նաև կենդանիների վրա: Պատանի բնասերները փորձերի ժամանակ հերձում են ճագարներ, գորտեր, ճնճղուկներ ու ձկներ: Դրանով երեխաները մանրամասն ծանոթանում են կենդանիների ներքին կառուցվածքին, արյան շրջանառությանը:

Այս բոլորից բացի խմբակի անդամները բազմաթիվ էքսկուրսիաներ են կատարում: Նրանք արդեն եղել են բամբակագործական կոլխոզում, կենդանաբանական այգում, բուսաբանական այգում, ման են եկել Երևանի շրջակայքում: Այսպիսով բիոլոգիական խմբակի անդամները հետաքրքիր նորություններ են իմանում: Նրանցից շատերը որոշել են ապագայում բնության վերափոխողներ դառնալ, ստեղծել կենդանիների ու բույսերի նոր տեսակներ, աճեցնել այգիներ: Եվ նրանք կդառնան այդպիսի մարդիկ:

ՀՐ. ԲԱԳՐԱՁՅԱՆ

# ՊԱՏԱՆԻ ՖՈՒՏԲՈԼԻՍՏՆԵՐԸ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

*Մանկական ստադիոնի ուղիղ կենտրոնում երկու դասարան երկուական խմբերի բաժանված լուռ ունկնդրում են սպորտի վարպետ Հակոբ Դուրգարյանին և անվանի մարզիչ Համո Խաչատրյանին։*

*— Գնդակը պետք է սրընթաց փոխանցել,— ասում է սպորտի վարպետը,— չի կարելի երկար ժամանակ վազել գնդակի հետ։ Փոխանցելիս չպետք է կանգ առնել, այլ պետք է ընթացքի ժամանակ հարվածել։*

*—Սպորտի վարպետը մի քանի անգամ կրկնում է ասածը, ապա տղաներից մեկի հետ նա ցույց է տալիս, թե ինչպես պետք է այդ բանը կատարել։*

*Սկսում են փորձել նաև մյուս տղաները։*

*Նրանք զույգերով գնդակի հետ արագ վազքով անցնում են դաշտի կենտրոնով։ Յուրաքանչյուրը աշխատում է ճիշտ և արագ փոխանցել գնդակը։ Այսպես շարունակվում է բավական երկար ժամանակ։*

*Սպորտի վարպետը գրպանից հանում է բլոկնոտը։ Դասարանի ամեն մի աշակերտ իր հատուկ թերթիկն ունի։ Դուրգարյանը հերթով, ուշի-ուշով հետևում է պատանիների ամեն մի վարժությանը, երբեմն նա բլոկնոտում որևէ անվան դիմաց ինչ-որ նըշումներ է կատարում, երբեմն էլ կանգնեցնում է խաղը։*

*— Ճիշտ պետք է հարվածել գնդակին, ոչ թե ոտքի մատերի մասով, այլ ամբողջ մակերեսով,— և ցույց է տալիս, թե ինչպես պետք է այդ անել։ Այդ նույն ժամանակ տղաների մյուս խումբը զբաղված էր մի այլ վարժությամբ։*

*Մոտենալով դարպասներին, նրանք ամբողջ ուժով հարվածում էին գնդակին։ Փոքրիկ դարպասապահները, ճարպիկ թռիչքներով, բռնում էին ամենադժվարին գնդակները։ Մի այլ կողմում տղաները իրարից ավելի հեռու էին կանգնած և գնդակը միմյանց փոխանցում էին բավականին մեծ տարածությունից։ Դրանք պաշտպաններն էին։*

*Ահա լրանում է դասի 45 րոպեն։ Պատանի ֆուտբոլիստները շրջապատում են իրենց մարզիչներին, լսում են նրանց խորհուրդները, դիտողությունները և հաջորդ ժամին ձգտում, որպեսզի սխալները չկրկնվեն։*

*Ահա այսպես են անցնում Երևանի Վորոշիլովի անվան ֆուտբոլի մասնագիտացված դպրոցի սաների պարապմունքները ստադիոնում։ Նրանք հպարտությամբ են հիշում, որ ֆուտբոլի դաշտում ավելի քան մի ամիս իրենց հետ պարապել է երկրի լավագույն մարզիչներից մեկը՝ սպորտի վաստակավոր վարպետ Գ. Ջեջելավան։*

*Սակայն չկարծեք, թե դպրոցի 240-ից ավելի աշակերտները, որոնք սովորում են 4—7-րդ դասարաններում, միայն ֆուտբոլ խաղալ են սովորում։*

*«Լավագույն սպորտսմենը ուսման գերազանցիկ պետք է լինի»։*

*«Առաջավոր լինել ուսման մեջ և սպորտում», ահա նման լոզունգներ կարելի է հանդիպել դպրոցի միջանցքներում, դասասենյակներում, կաբինետներում, դահլիճում։*

*Եվ աշակերտները, պատանի սպորտսմենները ձգտում են լինել այդպիսի ֆուտբոլիստներ։*

*— Եթե մյուս առարկաներից «2» գնահատական ստանաս, ֆուտբոլի դասին չես մասնակցելու,— ընկերոջ հետ զրուցելով դեպի դասարան է գնում 6-րդ դասարանի աշակերտ Կարլեն Առաքելյանը,— այդ բանը լավ իմացիր։*

*— Ես շատ լավ գիտեմ մեր դպրոցում սովորելու պայմանները,— ընկերոջը նայե-*

լով ասում է Գևորգը,— այս քառորդում միայն երկու առարկայից 3 գնահատական ունեի, իսկ մյուս քառորդում կտեսնեք, թե քանի 4 ու 5 եմ ստանալու։

Ոչ միայն Կալենն ու Գևորգը, այլ դըպրոցում սովորող բոլոր պատանիները պայքարում են ուսման առաջադիմության համար։

Վերջերս դպրոցի սաները նամակ ուղարկեցին Սովետական Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսիի № 35-րդ մասնագիտացված ֆուտբոլի դպրոցի աշակերտներին։



Մարզիչ Հ. Խաչատրյանը 1-ին դասարանցիներին ցույց է տալիս ոտքի ուղիղ դրությունը գնդակը կանգնեցնելու ժամանակ։
Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

«Սիրելի բարեկամներ,— գրում էին Երևանի Վորոշիլովի անվան դպրոցի սաները,— արդեն չորս ամիս է, մենք ձեզ նման սովորում ենք ֆուտբոլի մասնագիտացված դպրոցում։ Հետաքրքիր ու բովանդակալից են անցնում մեր դասերը։ Քաղաքի մանկական ստադիոնում շաբաթը չորս անգամ հմուտ մարզիչների ղեկավարությամբ անց են կացվում ֆուտբոլի պրակտիկ պարապմունքներ։ Ձեզ մոտ նման դպրոց կազմակերպվել է մի քանի տարի առաջ, իսկ մեզ մոտ միայն այս տարի. պարզ է, որ դուք աշխատանքի ավելի հարուստ փորձ ունեք։ Խնդրում ենք ձեզ, գրել ձեր աշխատանքների մասին։ Ինչքան լավ կլինի, եթե մենք հաճախակի հանդիպումներ ունենանք միմյանց հետ։

Պիոներական ողջույններով՝ դպրոցի պատանի ֆուտբոլիստների հանձնարարությամբ Թ. Հակոբյան, Ն. Ստեփանյան, Կ. Առաքելյան»։

Ձմեռ է։ Սպիտակ ու փխրուն ձյունը ամենուր սպիտակ սավան է փռել։

Փողոցներում, զբոսայգիներում, հրապարակներում ու ստադիոններում լսվում է մանուկների սրտաբուխ ծիծաղն ու կանչը։ Ոմանք սահում են դահուկներով, ոմանք էլ մրցում են չմշկավազքից։ Ձյունե հսկա բլուրի վրայից ամբողջ թափով սլանում են սահնակները։

Դահուկներով սահում են նաև Վորոշիլովի անվան դպրոցի պատանի ֆուտբոլիստները։ Նրանք նույնպես մասնակցում են մրցումներին, կազմակերպում են կրոսներ, արշավներ, դահլիճում պարապում են մարմնամարզությամբ։ Ֆուտբոլիստը պետք է բազմակողմանիորեն զբաղվի սպորտով։

Փոքրիկ ֆուտբոլիստների, նրանց հաղթանակների մասին դեռևս ոչ ոք չի խոսում։ Բայց ահա կանցնի երկու, երեք, գուցե չորս տարի, նրանցից շատերը հանդես կգան ռեսպուբլիկական, քաղաքային, համամիութենական մրցումներում։ Նրանց սպորտային բարձր վարպետության մասին կիմանան բոլորը, նրանց խաղով կհիանան հազարավոր ու տասնյակ հազարավոր հանդիսականներ...

Պատանի ֆուտբոլիստները համառորեն մարզվում են։

# ԴՎԻՆԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
(Պատմական գիտությունների թեկնածու)

*Շատ հին է Դվին քաղաքի պատմությունը: Նրա առաջին բնակիչները երևացել են դեռևս 4500—5000 տարի առաջ: Սակայն Դվինը մայրաքաղաք է դարձել 1500 տարի առաջ: Քաղաքն ունեցել է 20 քառակուսի կիլոմետր տարածություն, շրջապատված է եղել անտառներով և, որ հետաքրքրական է, հաստ ու բարձր պարսպով: Թագավորները, մարզպանները և այլ ազնվականներ ապրում էին քաղաքի միջնաբերդում: Դրա շուրջը փորված էր 15—18 մետր լայնությամբ և 5—6 մետր խորությամբ արհեստական մի առու (խրամ): Այս առվով անընդհատ հոսում էր Գառնիից եկող սառնորակ ջուրը: Խրամին զուգահեռ միջնաբերդի շուրջը պատվում էր 8 մետր հաստություն և 11 մետր բարձրություն ունեցող աշտարակավոր պարիսպը:*



Դվին քաղաքի կենտրոնական թաղամասը 5—7-րդ դարերում. վերակազմություն՝ Ա. Պատրիկյանի:

*Թեև քաղաքն ուներ պաշտպանության կուռ սիստեմ, բայց օտարերկրյա զավթիչները շատ անգամ գրավել են այն ու ավերել: Սակայն աշխատասեր մեր ժողովուրդը կրկին վերականգնել է Դվինը:*

*Միջնադարյան առևտրական մեծ ճանապարհներով, Հնդկաստանից, Իրանից, Բյուզանդիայից և այլ երկրներից, Դվին էին գալիս առևտրական քարավանները. այստեղ աշխույժ առևտուր էր կատարվում:*

*Կատարված պեղումները ցույց են տալիս, որ Դվինի ճարտարապետությունը շատ զարգացած է եղել: Քաղաքն ունեցել է բազմահարկ գեղեցիկ շենքեր, որոնցից մի մասը ներսից զարդարվել են կենդանիների և բույսերի գիպսե քանդակներով, մանր ձևավորված աղյուսներով, որմնանկարներով: Դվինի հոչակավոր մայր եկեղեցու ամբողջ հատակը պատած է եղել գեղեցիկ գույնզգույն խճանկարներով: Եղել են սյունազարդ մեծ և հոյակապ դահլիճներ, շենքեր, որոնցից մի քանիսը բացվել են միջնաբերդի ստորոտներում և նրա կենտրոնում: Սրանց մեջ կան կենդանազարդ և հայկական հյուսվածքներով զարդարուն որմնախորշեր՝ իրենց բոլոր հարմարություններով: Բացվել են միջնաբերդի առանձին բաժանմունքներ ունեցող բաղնիքը և քաղաքի մի քանի արհեստանոցներ: Այս արհեստանոցներում աշխատում էին հայ արհեստավորները: Նրանք արտադրում էին գործվածքեղեն, կենցաղային բազմազան իրեր, գյուղատնտեսական գործիքներ՝ մանգաղ, բահ, գութանի խոփ, կացին, ուրագ և սառը զենքեր՝ դաշույններ, թրեր, նիզակի ծայրեր, նետի սլաքներ, տեգեր:*



Տեղական սպիտակ ճախճապակյա թաս (11—12-րդ դար):

Հրապուրիչ գեղեցկություն ունի Դվինում պատրաստած բարձրորակ շողուն հախճապակին։ Հայկական ինքնուրույն ոճով, գեղեցիկ հյուսվածքներով, բույսերի ու կենդանիների պատկերներով զարդարված են 800—1300 տարի առաջ հայ բրուտագործի ձեռքով արտադրված կավամանները։



Աշխարհիկ շենքի որմնախորշը (12-րդ դարում)։

Ամանների վրա շատ հաճախ դաջված են խմբապարի տեսարաններ, զանազան կենդանիներ։ Փրկություն որոնող աքաղաղը հետապնդվում է աղվեսի կողմից, իսկ վերջինիս հալածում է շունը։ Այսպիսի պատկերներով են զարդարված նաև կարասները։

Հայ բրուտագործն իր պատրաստած գեղեցիկ կարասների վրա դրոշմել է նաև իր անունը՝ Ստեփան։

Դվինում շատ տարածված է եղել ապակու արտադրանքը։

Հագուստեղենը, բրդյա և մետաքսյա գործվածքները, կաշին հարյուրամյակներ մնալով հողի տակ փտել են, ոչնչացել. դրանց միայն պատառիկներն են մեզ հասել։

Հողի տակից հանվում են գեղեցիկ մատանիներ, ոսկե ձողերից ոլորուն օձագլուխ ապարանջաններ, ականջի օղեր, որոնց մեջ ուշագրավ է իր պատրաստման նրբությամբ և գեղեցկությամբ ականջի մի զույգ օղ։ Այդ օղի տախտակից կախված է 5 շղթայիկ, որոնց ծայրերից ամրացված են կիսալուսնի, թռչունների և մարդկային ֆիգուրաներ։ Հայ ոսկերչի արտադրանքի գագաթնակետն է ոսկե մանյակը, ոսկե մի երկար շղթա, որից կախված են նույնատիպ հյուսվածքով 100 հատ շղթայիկներ։ Վերջիններից յուրաքանչյուրի ծայրից կախված է մեկական ոսկե մանր գնդիկ։

Հարյուրավոր տարիներ առաջ հայ բրուտագործը, ջուլհակն ու արհեստավորները, նստած իրենց նկուղներում, տներում ու արհեստանոցներում, ցերեկը՝ արևի, իսկ գիշերը՝ ձեթի ճրագի աղոտ լույսի տակ, աշխատում էին իրենց անապահով կյանքի կարիքների համար. վերջանում էր ճրագի ձեթը, մարում էր վերջին լույսը, մարում էր և հայ արհեստավորի վերջին հույսը իր ճրագի հետ։ Ահա այդ ճրագների բազմաթիվ տեսակներն են, որ գտնվում են Դվինի պեղումների ժամանակ։



Ոսկեզօծ հախճապակյա սափորիկ (11—12-րդ դար)։

# ՄԻ ՍԵՐՄԻՑ ԵՐԿՈՒ ԾԱՌ

Ց. ԱՂԱՍԱՐՅԱՆ

Նկ. Լ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ

Ռուբիկը բույս շատ էր սիրում։ Իրենց բնակարանում նա բազմաթիվ ծաղիկներ էր աճեցրել և վաղուց էր երազում կիտրոն էլ ունենալ, բայց չգիտեր, թե ինչպես կարելի է կիտրոնի սերմը ցանել, աճեցնել։

Անցած օրը նա կարդաց Վերգիլինի «Ճանապարհորդություն բնակարանային բույսերի հետ» գիրքը և շատ բան սովորեց նրանից։

— Հրաչի՛կ, Գոհա՛ր, տեսեք, ես մի սերմ եմ ցանում, բայց երկու ծառ պիտի ստանամ,— ասաց նա իր փոքր եղբորն ու քրոջը։

— Մի սերմից երկու ծա՞ռ։ Մե՞զ ես ծաղրում,— նեղացավ Գոհարը։

— Այ, կտեսնեք,— պնդեց Ռուբիկը և նոր կտրած կիտրոնի դեռևս թաց կորիզի կեղևը հանեց՝ ծլունակությունն ուժեղացնելու համար ու մեկ սանտիմետր խորությամբ թաղեց ծաղկամանի սևահողի մեջ։



Ռուբիկը կանոնավոր ջրում էր կիտրոնի ցանքսը և ուշի ուշով հետևում՝ չի՞ երևում արդյոք, վեր բարձրացող ծիլը։

Դեռ չէր անցել մի ամիս, երբ Ռուբիկն ուրախացած կանչեց եղբորն ու քրոջը։

— Տեսե՛ք, արդեն ծիլ է քաշել կիտրոնըս,— ցնծաց նա։

— Իսկ ինչո՞ւ երկուսը չէ, տեսնո՞ւմ ես, դու ձեռք էիր առնում մեզ,— ասաց Գոհարը։

— Չէ՞ որ դեռ նոր է ծլել. սպասիր, երկրորդ ծիլն էլ կտեսնես,— պատասխանեց Ռուբիկը։

Անցավ մի քանի օր։ Երկրորդ ծիլը դեռ չէր երևում։ Ռուբիկն սկսեց հուզվել. չլինի՞ այդ սերմի մյուս սաղմերը կորցրել են ծլունակությունը, այժմ Հրաչիկն ու Գոհարը կծիծաղեն իր վրա։

Սակայն մի օր նա տեսավ երկրորդ ծիլը և ուրախությունից ծափ տալով գոչեց.

— Հրաչի՛կ, Գոհա՛ր, ահա՛, երկրորդ ծիլը, եկեք ձեր աչքով տեսեք։

Հրաչիկն ու Գոհարն իսկույն վազեցին դեպի լուսամուտը և նայեցին փոքրիկ ծաղկամանին։ Այնտեղ, իրոք, երկու բույս էր. մեկը՝ բարձր, իսկ մյուսը՝ նոր էր հողը ճեղքել ու դուրս եկել։

— Դու երևի երկու սերմ ես ցանել,— ասաց Հրաչիկը թերահավատորեն նայելով մերթ եղբորը, մերթ ծաղկամանին։

— Ո՛չ, ես միայն մի սերմ եմ ցանել, պիոներական ազնիվ խոսք...

— Ձե՞ս ամաչում, սուտ երդվում ես, որտե՞ղ ես տեսել, որ մի սերմից երկու բույս աճի,— ընդհատեց Հրաչիկը։

Ռուբիկը խիստ զայրացավ, որ իրեն չեն հավատում։ Նա ձողով փորեց հողը և բույսերի արմատը ցույց տալով, ասաց.

— Տեսե՛ք, ձեր սեփական աչքերով տեսե՛ք, որ ինձ չեք հավատում։ Ահա՛, պարզ երևում է, որ այս երկու ցողունը միևնույն սերմից է սկիզբ առնում. մեկը՝ սերմի մի ծայրից, մյուսը՝ մյուս։ Սրանք առայժմ այս նույն սերմով են սնվում, քանի որ տերևներ և արմատներ չունեն, իսկ երբ մի քիչ կմեծանան՝ կանջատվեն ու կդառնան առանձին, ինքնուրույն բույսեր։

*Հրաչիկն ու Գոհարն ուշադիր նայեցին, համոզվեցին, որ այդ երկու ծիլը մի սերմից է բուսել ու զարմացան: Այդ ժամանակ Ռուբիկն ինքնագոհ ժպիտը դեմքին բացատրեց.*



*— Ոչ միայն երկու, այլ, նույնիսկ երեք-չորս ծառ կարող է աճել մի սերմից: Այդ նրանից է, որ ցիտրուսային բույսերի սերմն ունի մի քանի սաղմ: Այդ բույսերը կոչվում են բազմասաղմ:*

*Հրաչիկը, որ առաջին տարին էր բուսաբանություն սովորում, զարմացած լսեց, ապա մի փոքր մտածելուց հետո ասաց.*

*— Շատ հետաքրքիր է բույսի կյանքը, Ռուբի՛կ, եկ միշտ գրքեր կարդանք ու փորձեր կատարենք:*

# ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

### ՀՈՂԱԾՈՒԾ ՄԵՔԵՆԱ

Հողածուծ մեքենան բաղկացած է մի մեծ պոնտոնի վրա տեղավորված հող ծծող մեքենայից և խողովակաշարից: Պոնտոնի երկարությունը 45 մետր է, լայնությունը՝ 12 մետր: Մոտ մեկ մետր տրամագիծ ունեցող ծծող խողովակն իջնում է ջրի հատակը (մինչև 15 մետր խորությամբ), այնտեղից ծծում ջրախառն հողը, բարձրացնում վեր, խողովակաշարով տեղափոխում և երկու-երեք կիլոմետր հեռավորության վրա թափում:

Հողածուծ մեքենան այսպես աշխատում է, երբ գետի հունը փխրուն է, իսկ եթե կարծր է, հատուկ փխրեցուցիչ պտուտակ են իջեցնում ջրի տակ, որի փխրեցրած հողը հողածուծ մեքենան բարձրացնում է վեր: Հողի քանակությունը այս ջրախառն զանգվածի մեջ, որը կոչվում է պուլպա, կազմում է ծավալի մեկ տասներորդ մասը:

Այս մեքենան մեկ ժամում փորում է հազար հինգ հարյուր խորանարդ մետր, այսինքն՝ կատարում է տասնհինգ հազար հողափոր բանվորի աշխատանք: Այսպիսի մեքենան տարեկան կարող է փորել հինգ միլիոն խորանարդ մետր հող: Հողի այս քանակությունը կարելի է տեղավորել մի կիլոմետր երկարություն, մի կիլոմետր լայնություն և հինգ կիլոմետր բարձրություն ունեցող ուղղանկյուն պրիզմայի մեջ: Որպեսզի այս մեքենան աշխատի, անհրաժեշտ է հաղորդել այնքան էլեկտրական էներգիա, որքան արտադրում է մի այնպիսի էլեկտրակայան, ինչպիսին մեր Երգէսն է: Հողը քանդվում է անմիջապես ջրի տակ և տեղափոխվում ջրի միջոցով:

Բացի դրանից, այս ջրախառն հողն օգտագործվում է հենց տեղում հողային պատվար կառուցելու համար, որը շատ ավելի լավ է ամրանում, քան չոր հողից պատրաստված պատվարները:



### ՇԱՔԱՐԵՂԵԳՆ

Շաքարեղեգի հայրենիքը համարվում է Բենգալիան, որն անցյալում «Գաուրա»՝ Շաքարի երկիր է կոչվել: Շաքարեղեգը հիմա վայրի վիճակում չկա:

Շաքարեղեգի բարակ, երկար ցողունը շատ է գնահատվում, որի հյութն իր մեջ մինչև 20 տոկոս շաքար է պարունակում:

Ալեքսանդր Մակեդոնացու զինվորները այդ քաղցր հյութը կոչում էին «առանց մեղվի մեղր»:

Չինաստանում դեռ 8-րդ դարում շաքարեղեգնից շաքար էին պատրաստում: Չինական հին նկարների վրա կարելի է հանդիպել շաքար պատրաստելու աղացների, որտեղ շաքարեղեգնի հյութն էին քամում, կամ այդ հյութը գոլորշացնող ամանեղենի:

Շաքարեղեգնի պլանտացիաներ շատ կան Ֆիլիպինյան կղզիներում: Այդ պլանտացիաները, ինչպես նաև շաքարի բազմաթիվ գործարաններ, պատկանում են ամերիկացիներին: Նրանք անմարդկային շահագործման են ենթարկում տեղական աշխատավորությանը:

Ֆիլիպինցիները շաքար գրեթե չեն օգտագործում, չնայած իրենց երկրում, իրենց իսկ աշխատանքով տարեկան 100 հազար տոննա շաքար է պատրաստվում: Նրանք բավարարվում են միայն շաքարեղեգնի քաղցր միջուկով:

## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ԱՃՈՒՄ Է ՇՈԿՈԼԱԴԻ ԾԱՌԸ



Մոտ հինգհարյուր տարի է անցել այն ժամանակից, երբ փորթուգալացիները եկան Աֆրիկայի Ատլանտյան ափը, որն այժմ Ոսկե Ափ է կոչվում:

Փորթուգալացի վաճառականներին այստեղ էր գրավում հարստանալու հեշտ հնարավորությունը: Նրանք այստեղից ստրուկներ և ոսկի էին տանում, որ ձեռք էր բերվում աֆրիկացիների տաժանակիր աշխատանքով:

18-րդ դարում Ոսկե Ափի մեծ մասին տիրացավ Անգլիան: Տեղական բնակչությունը կատաղի պայքար էր մղում գաղութարարների դեմ: Հարյուր տարի պետք եղավ Անգլիային, որպեսզի նա կարողանա ամրանալ զավթած տերիտորիայում:

Գաղութարարները ստիպեցին աֆրիկացի հողագործներին կրճատել իրենց ցանքսերը և զբաղվել շոկոլադի ծառեր աճեցնելով: Շոկոլադի ծառը, որից ստացվում են կակաոյի ողոռնները, Աֆրիկայում նոր է: Նրա հայրենիքը Հարավային Ամերիկան է, որտեղի բնիկները այդ ծառի շագանակագույն ողոռններից համեղ խմիչք էին պատրաստում դեռևս եվրոպացիների գալուց շատ առաջ:

Ոսկե Ափում շոկոլադի ծառերը մշակվում են մեծ մասամբ աֆրիկացիների գյուղացիական փոքրիկ տնտեսություններում: Սակայն կան նաև խոշոր պլանտացիաներ, որոնք պատկանում են անգլիացիներին և տեղական հարուստներին: Պլանտացիաներում բազմաթիվ բատրակներ են աշխատում. տերը ստիպում է աշխատել ոչ միայն բատրակին, այլև նրա ընտանիքի անդամներին: Տղամարդիկ ծառից կտրում են հասած պտուղները, որոնք նման են մեծ վարունգների: Երեխաները հավաքում են այդ պտուղները, իսկ կանայք սուր դանակներով ճեղքում են դրանք և դարսում մի կողմ: Երբ ողոռնները անջատվում են պտուղներից, նրանց չորացնում են արևի տակ: Կակաոյի ողոռնը հանդիսանում է Անգլիայի այդ գաղութի գլխավոր հանույթը: Անգլիացիները չափազանց ցածր գներով են վերցնում այդ ողոռնները գյուղացիներից և թանկ գներով վաճառում: Նրանք դրանից հսկայական օգուտ են ստանում:

Այդ ավազակային կողոպուտին մասնակցում է նաև անգլիական կառավարությունը, որը պատերազմի ժամանակ հինգ անգամ ավելի էժան գնեց Ոսկե Ափի ամբողջ արտադրանքը:

Գաղութարարները Ոսկե Ափի բնակչությանը խեղդում են ծանր հարկերով: Նրանք դաժանորեն շահագործում են ոչ միայն կակաո արտադրող գյուղացիներին, այլև հանքերի և նավահանգստի բանվորներին:

Աֆրիկացիները հաճախ բողոքի ցույցեր են կազմակերպում գաղութարարների անմարդկային շահագործման դեմ:

## «ԵՐԿՆԱԳՈՒՅՆ» ԱՐԵՎԸ

1950 թվի աշնանը երկրագնդի զանազան մասերում զարմանալի տեսարան էր դիտվում:

Արեգակը երկնագույն շափյուղայի գույն էր ստացել: Այդ բացառիկ երևույթը դիտվում էր Ֆրանսիայում, Շվեյցարիայում, Գերմանիայում, Շվեդիայում և Դանիայում: Հյուսիսային Փորթուգալիայի բնակչության

մեջ այդ բանը նույնիսկ խուճապ առաջացրեց:

Նույն ժամանակամիջոցին «երկնագույն» արևը տեսել էին նաև Շոտլանդիայում: Գիշերը Լոնդոնի վրա էր բարձրանում վառ երկնագույն լուսինը, իսկ Ջիբրալտարի նեղուցում, Աֆրիկայի հյուսիսային ափերի մոտ, ծովայինները հիանում էին հոյակապ երկնագույն մայրամուտով:

Ինչպես հաստատեցին օդերևութաբանները, այդ հիանալի, բացառիկ երևույթը անտառային հրդեհի արդյունք է եղել: Այդ ժամանակ Կանադայի տերիտորիայի վրա անտառային հրդեհը հսկայական ծավալի է հասել: Մոխիրի և փոշու մանրագույն հատիկները քամու միջոցով անցել էին Ատլանտյան օվկիանոսը և երկար ժամանակ «երկնագույն» արևի էֆեկտ էին առաջացնում:

Անցյալում շատ է նկատվել, երբ արևի լույսը երկրի մթնոլորտում երկնագույն կանաչավուն և կարմիր երանգ է ստացել:

Այդ երևույթները որպես կանոն, կապվում են հրաբխային ժայթքումների կամ անտառային հրդեհների հետ, երբ նրանք մեծ չափերի են հասնում:

# ԻՆՉՊԵՍ ՊԱՏՐԱՍՏԵԼ ՖԻԼՄՈՍԿՈՊ

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

*Այն լապտերը, որով ցուցադրում են կինոժապավենի վրա պատրաստված նկարները, կոչվում է ֆիլմոսկոպ: Այս նկարագրությամբ և գծագրերով ձեզնից յուրաքանչյուրը կարող է պատրաստել այդպիսի ֆիլմոսկոպ: Գծագրերի բոլոր չափերը տրված են միլիմետրերով:*

*Ֆիլմոսկոպի պատվանդանի համար վերցրեք տախտակի մի կտոր, կտրեցեք, ռանդեցեք և հղկեցեք: Այս տախտակի վրա է հավաքվում ֆիլմոսկոպը: Պատվանդանի մի ծայրին ամրացվում է լապտերը: Լապտերը կարելի է պատրաստել թիթեղից կամ տախտակից: Արկղի առջևի պատի վրա, մոտավորապես նրա կենտրոնում, բացում եք մի պատուհան (Նկ. 1): Պատուհանը ներսից պետք է ծածկել կաթնապակիով: Արկղը ներսից ներկվում է սպիտակ ներկով, իսկ վերին բաց մասը փակվում է թիթեղից պատրաստված կափարիչով: Կափարիչի կենտրոնում բաց արեք մի կլոր անցք էլեկտրական լամպի պատրոնի համար: Կափարիչի չորս կողմի եզրերը ծռեք, դրանցով կափարիչը հագնում է լապտերի վրա (Նկ. 2): Լապտերի հետևի տախտակի ստորին մասում, օդի համար մի քանի փոքրիկ անցք փորեցեք:*



Նկ. 1



Նկ. 2

*Ֆիլմոսկոպի լապտերի լուսային պատուհանի առջև սարքեցեք հատուկ հարմարանք՝ դիաֆիլմը շարժելու համար: Այդ նպատակով պետք է պատրաստել նկար 3-ում ցույց տված շրջանակը, որը բաղկացած է երկու նեղ շրջանակներից: Շրջանակի առաջին մասը ամուր միանում է լուսային լապտերին: Նրա երկայնքով փորված է 35 մմ լայնությամբ մի առվակ ֆիլմի համար: Շրջանակի երկրորդ մասը միանում է առաջին մասին շարժական ծխնիներով: Երկրորդ մասը կարող է բացվել, եթե կողի կարթը բացենք: Շարժվող շրջանակի ներսի մասը և անշարժ մասի առվակը երեսպատվում են սև թավիշով կամ ֆլանելով: Շրջանակի լուսամուտը պետք է համընկնի լապտերի լուսային պատուհանին:*

*Ֆիլմը շարժելու համար պետք է 4-րդ գծագրի համաձայն պատրաստել երկու կոճ: Այս կոճերը, նկար 5-ում ցույց տված կրոնշտեյնների միջոցով միանում են ցուցադրական շրջանակի անշարժ մասի կողերին՝ փոքրիկ պտուտակներով: Կոճի միջին, առանցքային անցքը կարելի է բացել, շիկացրած հաստ երկաթալարով այրելու եղանակով:*

*Կրոնշտեյնի և կոճի միջով անցկացրեք մետաղե առանցք, այնպես որ վերին կոճը ազատ շարժվի իր առանցքի շուրջը, իսկ ներքևի կոճը առանցքի վրա ամրացրեք ամուր, որպեսզի նա պտտվի իր առանցքի հետ միասին: Ներքևի կոճը պտտեցնելու համար պետք է պտտել նրա առանցքը: Այդ նպատակով*



Նկ. 3

վերջինիս ծայրերից մեկի վրա հագցնում են փայտի գլխիկ։ Ներքևի կոճի գլանին, որը ընդունում է ցուցադրած ժապավենը, ամրացրեք բարակ լարից պատրաստած 2 փոքրիկ կարթ։ Դրանց է ամրանում դիաֆիլմը իր եզրերում ունեցած անցքերով։



Նկ. 4

Մնում է պատրաստել ցուցադրող մասը։ Այդ նպատակով ստվարաթղթից պատրաստեցեք երկու խողովակ։ Հետին խողովակը՝ ավելի լայն է և սոսինձով փակցվում է շրջանակի դռնակին։ Այս խողովակի հետին մասում տեղադրվում է մի կողմը հարթ, մյուս կողմն ուռուցիկ, 11 դիոպտր ունեցող մի ոսպնյակ (կոնդենսատոր)։ Առաջնային խողովակը՝ ավելի նեղ է։ Նա մտնում է հետին խողովակի մեջ։ Այս խողովակը պետք է հագցնել հետին խողովակի մեջ, բայց պետք է ազատ ետ ու առաջ շարժվի։

Երկրորդ խողովակի համար վերցնում են առնվազն 40 միլիմետրանոց մի կողմն ուռուցիկ, իսկ մյուսը՝ գոգավոր ոսպնյակ։ Այս երկու խողովակների ներքին մասը ներկեցեք սև ներկով։ Կարելի է ներկել սև տուշով։ Պատրաստի ֆիլմոսկոպը ստուգեցեք 6-րդ գծագրով։

Ֆիլմոսկոպի մասերը հավաքելիս հետևեցեք, որ էլեկտրական լամպի շիկացող լարը լինի ֆիլմոսկոպի պատուհանի ուղիղ կենտրոնի դիմացը։ Ֆիլմոսկոպի լամպը 75—100 վատանոց պետք է լինի։



Նկ. 5

Ֆիլմն այնպես են փաթաթում վերին կոճի վրա, որ կադրերը լինեն շրջված։ Այդ դեպքում սպիտակ էկրանի վրա պատկերը ճիշտ կստացվի։ Ֆիլմի ներկարված կողմը պետք է լինի ուղղված դեպի լապտերը։ Ժապավենի ծայրը անցկացրեք շրջանակի թավշապատ առվակով և նրա կողային անցքերը գցեք ներքևի կոճի կարթերի վրա։ Սենյակի պատուհանները ծածկեցեք մուգ վարագույրներով, իսկ օբեկտիվը ճշտեք և ուղղեք էկրանի վրա։



Նկ. 6

Ձախ ձեռքով պահեցեք ֆիլմոսկոպը, իսկ աջով պտտեք ցածի կոճը և փոխեք ցուցադրվող կադրերը։ Մեկ ֆիլմ դիտելուց հետո, կարելի է այն փոխարինել նորով։

Ֆիլմոսկոպը յուրաքանչյուր դպրոցում, պիոներական յուրաքանչյուր ջոկատում՝ անհրաժեշտություն է։ Ֆիլմոսկոպով կարելի է դիտել բազմաթիվ գեղարվեստական նկարներ։ Ցանկացած դասը, զրույցը, դասախոսությունը, պիոներական հավաքույթը կարելի է նրա օգնությամբ ավելի պատկերավոր դարձնել։ Ամեն մի պիոներ կարող է պատրաստել ֆիլմոսկոպ։

Պատրաստեցեք ֆիլմոսկոպներ ձեր դպրոցի և ջոկատի համար։ Դժվարանալու դեպքում դիմեցեք «Պիոների» խմբագրությանը։

## «ԾԱՂԿԱՁՈՐ»

«Ծաղկաձոր» է կոչվում Սարմենի մանկական բանաստեղծությունների նոր գիրքը: Այդ գրքի ոտանավորները պատմում են




պիոներների ճամբարային կյանքի մասին:

«Երգ ճանապարհի», «Արևիկի գագաթին», «Վերադարձ» ոտանավորներում Սարմենը նկարագրում է, թե ինչպես են պիոներները այցելում շրջապատի գեղատեսիլ անտառները, դաշտերն ու լեռները, ուսումնասիրում հայրենի բնությունը:

Խարույկների շուրջը պիոներները պարում են, երգում, արտասանում, հանդիպումներ ունենում անվանի մարդկանց հետ: Հենց այդպիսի մի հանդիպման ժամանակ պիոներ Պետիկի բանաստեղծ քեռին կարդում է իր «Հունան» պոեմը՝ Սովետական Միության Հերոս Հունան Ավետիսյանի մասին: Լինել խիզախ Հունան Ավետիսյանի նման, հայրենիքի համար չխնայել կյանքը,— այս է պիոներների ցանկությունը: Սովետական երեխաների ցանկությունը բանաստեղծն արտահայտել է հետևյալ կերպ.

Լինենք հաղթող, լինենք արի,
Սովորենք միշտ գերազանց,
Որ մոր նման մեզ միշտ սիրի
Երկիրը մեր փառապանծ:

## «ՈՎ ԻՆՉ ԳԻՏԵ»

Հայրենական Մեծ պատերազմի տարիներն են: Չեխ պարտիզան Յանի ընտանիքում խնամքով և հոգատարությամբ են շրջապատում սովետական երկու վիրավոր մարտիկի: Փոքրիկ Սվետլանան նրանց համար ծաղիկներ է բերում, երգում չեխական երգեր: Երբ մարտիկները առողջանալով մեկնում են ռազմաճակատ, Սվետլանան նրանց մի նամակ է տալիս և խնդրում հանձնել սովետական պիոներներին: Թղթի վրա նա անվարժ տառերով ռուսերեն գրել էր. «Իմ սիրելի ընկերներին, Սովետական Միության պիոներներին, իրենց չեխ ընկերուհի Սվետլանայից»: Այդ Սվետլանայի առաջին նամակն էր սովետական պիոներներին:

Այժմ Սվետլանան, Չեխոսլովակիայի ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի և դեմոկրատական մյուս երկրների դպրոցականները հազարավոր նամակներ են գրում Սովետական Միության պիոներներին: Նրանք ցանկություն են հայտնում լինել սովետական պիոներների պես խիզախ, արի և ազնիվ հայրենասերներ:

«Առաջին նամակը» պատմվածքը զետեղված է Խ. Գյուլնազարյանի «Ով ինչ գիտե» գրքում: Այդ գրքում դուք կգտնեք նաև շատ ուրիշ հետաքրքիր պատմվածքներ: Այդ պատմվածքներում պատմվում է ձեր կյան-




քի և ուսման մասին, սովետական դպրոցականի հայրենասիրության, ազնվության, ընկերասիրության և համեստության մասին:

Ա. ԶԱՔԱՐՅԱՆ
(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

# ԴԱՍԱՐԱՆՈՒՄ ԵՎ ԴՐՍՈՒՄ



*Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ*

— Օ՜ֆ բես, Մուրի՛կ, այդ ի՞նչ ես անում,
Ինչպե՞ս ես պահում քեզ դասարանում.
— Սո՛ւս, Աշո՛տ, ոչինչ, թող անցնի գնա,
Թե չէ դասատուն հանկարծ կիմանա...
Դե՜, ես քանոնը մուգ է ավելի,
Նրանով գրել՝ շատ է հաճելի...





Դրսում այս տղան առյուծ է, անվախ
Խփում է սրան, նրան աջ ու ձախ,
Իսկ դասարանում՝ դաս չի իմացել
Տեսե՛ք՝ ինչպես է կանգնել, խեղճացել:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Մ. ՍԵԴՐԱԿՅԱՆԻ*


*Խմբ-գիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՏԱԼՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 00523, Պատվեր 42, տիրաժ 5000, Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 30. I. 1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.*

# 1953 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## Տասնհինգ տարի

Ցուրտ հոսանքներն ու բևեռային քամիները թափառող սառցադաշտը բևեռից քշում էին դեպի Գրենլանդիայի ափերը... Հյուսիսային բևեռի սառցադաշտի ճամբարի գլխին ծածանվում էր մեր մեծ երկրի պետական դրոշակը: Այդտեղ էին սովետական խիզախ օդաչուները իջեցրել բևեռը նվաճող չորս հերոսներին՝ Պապանինին, Կրենկելին, Շիրշովին և Ֆեոդորովին: Դա տասնհինգ տարի առաջ էր: Սովետական մարդիկ բևեռային դաժան ձմեռվա պայմաններում այդտեղ ապրեցին և աշխատեցին ինն ամիս:

Սառույցի վրա նրանք ապրում էին որպես սովետական մի կոլեկտիվ: Ժողովներ ու պարապմունքներ էին ունենում, անընդհատ սովորում, ազատ ժամերին զբաղվում գրքերի ընթերցանությամբ: Բայց նրանց ամենամեծ խնդիրը գիտական կարևոր հարցեր լուծելն էր: Նրանք կատարում էին օդերևութաբանական, հիդրոլոգիական և աստղագիտական մեծ աշխատանքներ:

Հերոսները թեև հեռու էին հայրենիքից, բայց ռադիոյով կապվում էին նրա հետ, հետաքրքրվում նրա կյանքով: Հայրենիքը և ընկեր Ստալինը նույնպես հետաքրքրվում էին նրանց կյանքով: Նրանք թողեցին սառցադաշտն այն ժամանակ, երբ նրանից մի խախուտ կտոր էր մնացել: «Մուրման» և «Թայմիր» սառցահատները հերոսներին փոխադրեցին հայրենիք:



Հյուսիսային բևեռը նվաճող սովետական մարդիկ գիտությունը հարստացրին բևեռի մասին եղած անգնահատելի տվյալներով:

## Հեղաշրջում գիտության մեջ

Դեռ հին դարերում տարածված էր աստղաբաշխ Պտղոմեոսի այն կարծիքը, թե երկիրը մի գնդաձև անշարժ մարմին է, որը գտնվում է տիեզերքի կենտրոնում: Արևը, աստղերը և մոլորակները պտտվում են երկրի շուրջը: Դա 1500 տարի շարունակ տիրապետում էր գիտության մեջ:

Այդ հարցի լուծմանը ձեռնարկեց նաև լեհական հանճարեղ գիտնական Նիկոլայ Կոպերնիկոսը: 1543 թվականին լույս տեսավ նրա «Երկնային մարմինների շրջապտույտների մասին» հանճարեղ գիրքը: Այդտեղ նա Պտղոմեոսին հակառակ էր գնում, և ապացուցում էր, որ երկիրը պտտվում է իր առանցքի շուրջը, իսկ մյուս մոլորակների հետ միասին՝ արեգակի շուրջը: Կոպերնիկոսն ապացուցում էր, որ երկիրը երկնային մարմիններից մեկն է, իսկ միջնադարյան տերտերները պնդում էին, որ երկիրը աստված է ստեղծել և աշխարհի կենտրոնն է:



Կոպերնիկոսի հայտնագործությունը գիտության համար ռևոլյուցիա էր: Բայց դա հեշտությամբ չընդունվեց իր ժամանակ: Պատահական չէ, որ Կոպերնիկոսը իր մեծ գյուտը հրապարակեց միայն մահից քիչ առաջ: Հռոմի պապը և միջնադարյան տերտերները սկսեցին դաժանորեն հետապնդել Կոպերնիկոսի ուսմունքը և նրան հետևողներին:

Այսօր էլ արևմուտքի հետադիմական ուժերը հանդես են գալիս Կոպերնիկոսի ուսմունքի դեմ: Բայց ժողովրդական Լեհաստանը, ամբողջ առաջավոր մարդկության հետ միասին, հարգանքով է նշում իր մեծ զավակի ծննդյան 480 տարին:

## Գիտնական գրողը

Հայտնի վիպասան Ժյուլ Վեռնը ծնվել է ֆրանսիացի փաստաբանի ընտանիքում, 1828 թվականին: Նա մանուկ հասակից սիրել է ճամփորդությունը և ծովը: Բայց հայրն ուզում էր նրան իրավաբան դարձնել. դրա համար էլ նրան տեղափոխեց Փարիզ: 1863 թվին նա հրատարակեց «Հինգ շաբաթ օդապարիկով» վեպը: Առաջին վեպով հեղինակի անունը հռչակվեց: Նա իրար ետևից մինչև մահը՝ 1905 թիվը, լույս ընծայեց գիտական-ֆանտաստիկական և արկածային վեպերի մի ամբողջ սերիա՝ բաղկացած 57 վեպից «Արտասովոր ճամփորդություններ» ընդհանուր վերնագրով: Վեպերից նշանավորներն են՝ «Խորհրդավոր կղզի», «Նավապետ Գրանտի որդիները», «80 հազար կիլոմետր ջրի տակ», «Աշխարհի շուրջը ութսուն օրում», «Երկրից դեպի լուսին», «Տասնհինգ ամյա կապիտանը» և այլ գործեր:



Այդ վեպերում ընթերցողը Ժ. Վեռնի հետ միասին շրջում է Ամերիկայի տափաստաններում, մտնում էվկալիպտի հսկայական անտառները, տեսնում Կորդիլերյան լեռները, ծանոթանում աֆրիկյան անանցանելի անտառների կենդանական աշխարհին...

Ժ. Վեռնը շատ լավ ծանոթ է իր ժամանակի քիմիայի, ֆիզիկայի, բնագիտության, մաթեմատիկայի և այլ գիտությունների նվաճումներին: Ժ. Վեռնի հերոսները ուժեղ կամքի տեր, եռանդուն, հերոսական մարդիկ են: Նրանք պատրաստ են զոհելու իրենց կյանքը գիտության և առաջադիմության համար:

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՂ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ



Լենինգրադի Ա. Ա. Ժդանովի անվան Պիոներների պալատում. 225-րդ դպրոցի 5-րդ դասարանի աշակերտները Գորու ընկեր ՍՏԱԼԻՆԻ տան իրենց պատրաստած մակետի մոտ:

Խաբարովսկի 33-րդ դպրոցի 6-րդ դասարանի [illegible] ուսումնական իրենց փոքր